ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԵ.

ՊՐՈՖ. Հ. ԳԷԼՑԷՐ

# ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1897.

ՊՐՈՖ. Հ. ԳԷԼՑԷՐ

# ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

---

**ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎՔ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ**

*1. Ցանկ 1895էն—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց:*

---



ԹԱՐԳՄԱՆԵՑ

**Հ. ԳՐ. Վ. ԳԱԼԷՄՔԵԱՐԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ.



ՎԻԷՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1897.

# ԱԶԴ

*Յաջորդ "Համառօտ Պատմութիւն Հայոց„ թարգմութիւն է Ճենայի Համալսարանի Պատմութեան Պրոֆեսոր* H. Gelzer*ի* „Armenien“ *վերնագրով՝* „Realencyklopädie für protestantische Theologie und Kirche“ *(3 Տպգր. 1896 Հտր. Բ. էջ 63-92) հրատարակութեան մէջ լոյս տեսած յօդուածին՝, որ յընդհանուրն՝ ճոխ եւ գեղեցիկ պատմութիւն է Հայոց, նորագոյն հետզօտութեանց համեմատ գրուած: Գործ՝ որ մինչեւ մեր օրերը կը հասնի, իւր համառօտութեանը մէջ ազգին պատմութեան ամբողջական ծրագիրը կը բովանդակէ, եւ հարկաւոր է ամէն ազգայնոյ:*

*Ծանօթութեանց մէջ աւելցուցած ենք մատենագրական տեղեկութիւններ՝ հետեւելով հեղինակին ոճոյն:*

*Ի վերջոյ դրած ենք՝*

*1. Հայոց կոտորածներու առթիւ 1895 էն մինչեւ 1897 Մայիս եւրոպական լեզուներով լոյս տեսած գրքերուն ցանկը: Այս ցանկն աշխատած ենք մանրամասնօրէն դնել, նշանակելով նաեւ գները: Ուր որ մանրամասնութիւն չենք դրած, ըսել է որ մենք գիրքը տեսած չենք, այլ վերնագիրները ուրիշներէն քաղած:*

*2. Հայոց Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց ցուցակը կազմած ենք արդէն ծանօթ ցուցակներէ, որոնք մեծածախ գրքերու մէջ ըլլալով, ամենուն մատչելի չեն: Նորագոյն հետազօտութիւնները նշանակած ենք ըստ*

*յարմարութեան, նոյնպէս ոմանց մահուան տարիները՝ քաղելով այլեւայլ գրքերէ: Ցանկս կը մնայ առժամանակեայ գործածելի. եւ ոչ վերջնական, որուն համար հարկ է տակաւին սպասել ժամանակի:*

*Կը կարծենք այս յաւելուածներով գործոյս աւելի այժմէութիւն տուած ըլլալ:*

*ԹԱՐԳՄԱՆԻՉԸ*

# ՑԱՆԿ

ՊՐՈՖ. Հ. ԳԷԼՑԷՐ

# ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

---

[Աղբիւրներ: Չամչեան, Պատմ. Հայոց, ի սկզբանէ աշխարհի մինչեւ ցամն Տեառն, 1784. 3 հատ. 1784—86: Նոյնն անգղ. համառօտ՝ Avdall J., History of Armenia, Calcutta, 1827, 2 հատ.: J. Saint-Martin, Mémoires historiques et géographiques sur l'Arménie, Paris, 1878—79. 2 հատ.: Ղ. Ինճիճեան, Ստորագրութիւն հին Հյաս. Վենետ. 1822: V. Langlois, Collection des historiens anciens et modernes de l'Arm. Paris, 1867—69, 2 հատ.: M. Brosset, Collection d'historiens Arméniens, St. Pétersb. 1874—76, 2 հատ.: E. Dulaurier, Le Royaume de la Petite-Arm. (Recueil des historiens des croisades. Documents arméniens.) Paris 1869, հատ. Ա: Նոյն, Étude sur l'organisation politique, religieuse et administrative du royaume de la Petite-Arm. „Journal Asiat.“ V. Sér. T. XVII p. 377—, XVIII p. 289—. Brosset, Les ruines d'Ani, St. Pétersb. 1860—61, 2 մաս: Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, Վենետ. 1885: Նոյն, Այրարատ 1890: Նոյն, Սիսական 1893:]

## 1. Պատմութիւն:

Հայաստան՝ Սեւ եւ Կասպից ծովերու, եւ Տաւրոսի ու Կովկասի մէջտեղը, իւր ամենամեծ տարածութեան ժամանակ՝ 37—49 արեւել. երկայնութեան եւ $37^1/_2$—$41^3/_4$ հիւս. լայնութեան աստիճանին մէջ էր, այսինքն՝ կը տարածուէր Տաւրոսէն, Միջագետքի վերջին հիւսիսէն եւ քրդական լեռներէն մինչեւ ի Կովկաս եւ

Վրաստան, սահման ունենալով Կուր գետը, արեւելքէն՝ Կասպեան ծովը եւ արեւմուտքէն Փոքր Ասիան։ Արեւելեան մասը մինչեւ ցԵփրատ կը կոչուէր՝ "Մեծ Հայք", իսկ Եփրատէն դէպ ի արեւմուտք՝ "Փոքր Հայք"։ Հայաստան գլխաւորաբար լեռնագաւառ է, եւ ունի դաշտագետիններ։ Բաժանիչ լեռնաշղթաներ կ'անջատեն նաեւ մեծ գետերու ակունքն։ Հիւսիսային էջքէն դէպ յարեւելս ի ծովն Կասպից կը հոսեն Կուր (Kyros) եւ Երասխ (Արաքս). իսկ հարաւային էջքէն դէպ ի Միջագետքի խորավայրերը՝ Եփրատ եւ Տիգրիս։ Հսկայ եւ անտառաշատ լերինք եւ խորակտուր հովիտք զիրար կը փոխանակեն, որոնք ունին բերրի ագարակներ, պտղոյ սքանչելի տեսակներ եւ տեղ տեղ պատուական այգեգործութիւն։ Այստեղ ձմեռն խիստ եւ ձիւնաշատ է, իսկ ամառն չոր եւ ջերմ։ Տեղացի աշխարհագիրներուն համեմատ՝ Հայաստան աշխարհիս կենդրոնն է։

Հայաստանի հնագոյն պատմութեան վրայ վստահելի տեղեկութիւն ունինք Ասորեստանցիներէն, եւ տեղացի սեպագիրներէն, թէեւ վերջնոյս ընթերցումը տակաւին կը փորձուի։ Ասորեստանեայք այս երկիրը կը կոչէն Ուրարտու։ Ասոր կը համապատասխանէ Ս. Գրոց אֶרֶץ אֲרָרָט (յերկիրն Արարատայ) Բ. Թգր. 19, 37 եւ Ես. 37, 38 եւ կամ בוֹכְבֶת אֲרָרָט (Արարատեան թագաւորութիւն) Երեմ. 51, 27։ Իսկ ժողովրդեան բնիկ անունն է Խալդիք՝ Խալտիս գլխաւոր աստուծոյն անուամբ։ (Յոյնք կ'աւանդեն ի Պոնտոս եւ ի Հայս բնակող ազգ մը՝ Χάλδοι, Χαλδία եւ սխալմամբ նաեւ Χαλδαῖοι քաղդէացի։) Հայաստանի այս նախնի բնակիչները նորագոյններէն ամէնէն աւելի լեզուաւ կը զանազանին։ Այս լեզուն Սումերականի եւ Խուժաստանի բնիկ լեզուին պէս՝ դաւառալեզու մըն է, որուն կազմութիւնն ուրալ-

ալտայեան լեզուաց հետ ազգականութիւն կամ նմանութիւն կը ցուցընէ։ Ի սկզբան Վանայ ծովուն արեւելակողմը բնակող — Արարատ (Այրարատ) կենդրոնական գաւառն իւր այս կոչմամբն յայտնապէս անոնց հետքը ցոյց կու տայ — Ուրարդուք կամ Խաղտիք յետոյ դէպ ի հարաւ եւ արեւմուտք յառաջացան։ Շատ հանճարեղ եւ գործօն իշխանական ցեղ մ'այստեղ մեծ պետութիւն մը հիմնեց եւ յաջողութեամբ իբրեւ ախոյեան կռուեցաւ Ասորեստանեայց դէմ։ Անոնց մայրաքաղաքն էր Վան-Տոսպ այգեքաղաքն իւր անառիկ միջնաբերդովը։ Այնտեղ կանգնուած Խաղտիսի՝ ազգային աստուածոյն տաճարը այս աստուածպետական կազմութիւն ունեցող պետութեան կենդրոնն էր։ Մենուաս թագաւորն համանուն հրաշակերտ Մենուասի-ջրանցքով (այսօրս Շամիրամայ առու կոչուած) իւր քաղաքին ջուր կը մատակարարէր։ Պետութիւնն իւր գագաթնակէտն հասած էր Մենուասայ որդւոյն Արգիստիս Ա.ին ժամանակ, որուն դէմ Սաղմանասար Գ. (783—773) վեց անգամ պատերազմ մղել ստիպուած էր։ Անոր տկար յաջորդներուն ժամանակ Ուրարդու իւր դաշնակից դրացի եւ աւատական իշխանութեանց հետ՝ յառաջակողման Ասիոյ վրայ արդեամբք գերիշխանութիւն ունէր։ Սակայն Թագղաթփաղասարի գահակալութենէն ի վեր Ասորեստանեայց զօրանալն՝ քիչ ետքն ոչնչացուց այս առժամանակեայ գերիշխանութիւնը։ Նոյն իսկ 735ին Տոսպ մայրաքաղաքն աւեր եղաւ։ Հանդերձ այսու Ուրարդուի տկարացեալ պետութիւնը տակաւին մնաց, միշտ Ասորեստանեայց հետ ոխերիմ թշնամութեան մէջ։ Այս պատճառաւ 681ին Սենեքերիմայ հայրասպան որդիքն հոն ապաւինեցան։ Այնուհետեւ այս երկու մեծ պետութեանց յարաբերութիւնները հետզհետէ բարեկամութեան փոխուեցան։ Մինչեւ 640՝ Ուրարդուի թագաւորաց դեսպանները Նինուէ

կ'երթային։ Վերջին անգամ Երեմիա մարգարէն կը յիշէ այս պետութիւնը. այնուհետեւ պատմութեան մէջէն անհետ կ'ըլլայ։ (Հմմտ. C. F. Lehmann, Das vorarmenische Reich von Van. Deutsche Rundschau 1894,95 I. էջ 353—69. Lehmannի եւ Belckի բազմաթիւ յօդուածները տես Zeitschr. für Ethnologie 1892, էջ 122—, 1893 էջ (61)—. էջ (217)—, էջ (389)—, 1896 էջ (578)—. Zeitschrift für Assyrologie VII. էջ 255—, IX էջ 82—, 339— եւայլն։*)

Հնդիկ-գերմանական ցեղերու բուն յառաջխաղացութեամբը, որուն սկիզբ ըրաւ Կիմմերացւոց յարձակումը, Զ. դարուն բոլորովին նոր հնդիկ-գերման ժողովուրդ մը Հայաստանը ողողեց։ Պարսիկներն ու Յոյներն այս ժողովուրդը Արմէն (արմինա) կ'անուանեն, մինչդեռ ինքն ժողովուրդը այս անունը չի գիտեր։ Արմէններն իրենք զիրենք կ'անուանեն Հայք (յգն. հայ բառին), նոյնպէս նաեւ երկիրը Հայք (կամ Հայաստան), եւ իրենց ծագումը առասպելական Հայկ նախահօրէն կը համարին։ Կարելի է որ անոնք Կիլիկիայէն գաղթած ըլլան։ Վասն զի Պ. Եէնսէնի սրամիտ հետազօտութեանց համեմատ՝ շատ հաւանական է՝ որ հիտտիտ մեհենագիր կոչուած գրութեանց լե-

---

* Նոյնը՝ Das Reich der Mannäer: Verhdlgn. d. Berliner Anthrop. Gesell. 1894 Nov. — Никольскій М. В. — О двухъ Ассирійскихъ Фрагментахъ князя П. А. Путятина. Дѣйствит. чл. —: »Древности восточныя«, Томъ Первый, Выпускъ III. Москва, 1893, ч. 353—453. Նոյնը՝ Клинообразная надписъ русы і въ Келаны-Кирланы (Алучалу). На берегу гокчи въ Ѳриванской губерніи. (Оттискъ изъ Археолог. Изв. и Зап 1893 г. Nr. 12.) Москва, 1893. 4° 4+VII ч. Նոյնը՝ Клинообразныя надписи ванскихъ царей: Труды Вост. Ком. Т. 1. вып. 3 стр. 397. Նոյնը՝ Древная страна Урарту (Араратъ) и слѣды ассиро-бабилонской культуры на Кавказѣ: »Землевѣдѣніе« 1894. 8° 24 ч. Նոյնը՝ Клинообразныя надписи Закавказья: Матеріалы по Археологіи Кавказа. Выпускъ V. Москва, 1896, 4° 131 ч. XXXIII Табл.

գուն նախահայերէնն ըլլայ։ (Հմմտ. P. Jensen, Grundlagen für eine Entzifferung der (hatischen oder) cilicischen (?) Inschriften. ZddmG. XLVIII էջ 235—, 429—։ Նոյնը՝ Die kilikischen Inschriften, WZfdKdM. 1896 էջ 1—*։) Ասոր հետ կը համաձայնի եւ այն՝ որ Հերոդոտ (Ա 72, 94. Գ. 93. Է 32) իրենց բնակավայրն արեւմուտք, Փոքր Հայք եւ Եփրատայ ու Տիգրիսի ակունքը կը դնէ, մինչդեռ արեւելք, Երասխայ հովիտը Ալարոդները կը բնակէին, որոնք իրաւամբ Ուրարդուներու հետ նոյն կը համարուին։ Յամենայն դէպս նորեկ հնդիկ-գերմանական իշխող ցեղն իւրացընելու ոյժ ունէր, որ յաջորդ դարերու ընթացքին մէջ հին օտարազգի նախաբնակիչներն ամբողջովին իւր հետ ձուլեց։ Յառաջ Լագարդ եւ ուրիշները կը կարծէին որ հնդիկ-գերմանական Հայերն անձուկ ազգականութիւն ունին Իրանցւոց հետ, բայց այժմ իբրեւ բոլորովին սխալ՝ թողուած է այս. ինչ որ Հայերն իրանական լեզուէ ունին պատմական ժամանակները փոխ առած են։ Ինչ որ ազգային պատմագիրներ՝ Մար Աբաս Կատինա եւ Մովսէս Խորենացի հնագոյն պատմութեան մասին կ'աւանդեն, մեծաւ մասամբ եւ ոչ իսկ պատմական արժէք մ'ունին, այլ գիտնական կարկատանք են։ Այսպէս Թորգոմ, Հայկայ հայրը, Ս. Գրոց Եօթանասնից թարգմանութենէն առնուած է. վասն զի Ս. Գրքին ազգերու ցանկին եկեղեցական մեկնութեան համեմատ՝ Հայերն Θοργαμάյէն (Թորգամա) կը ծագին։ Հայկի յաջորդներու ժամանակ Արմե-

* Նոյնը՝ Zu den zwei Inschriften Sarduris des Ersten: Zft. f. Assyrologie. 1893, S. 375—381. Նոյնը՝ Hittiter, Kiliker und Khatier: Beil. d. Allg. Ztg. 1895 Nr. 291, S. 1—; Nr. 294 S. 4—6. Նոյնը՝ Ist die Sprache der cilicischen (hatischen) Inschriften armenisch? Eine Frage an die Indogermanisten: „Indogerm. Forschungen“ III. S. 255—67.

Նաւկայ եւ Կաղմոսի նման կասկածելի կերպարանքներ կ'երեւան։ Արամ, որուն անուան հետ այնչափ զրոյցներ կապուած են, Ասորիներէն առնուած է, ինչպէս անունն ինքնին կը վկայէ. այսպէս նաեւ Հայք միեւնոյն պարզմտութեամբ իրենց քրիստոնէութեան սկզբան պատմութեան համար՝ ասորական աւանդութիւնն իւրացուցած են։ Ամէն բանէ աւելի Հայաստանի փառքն այն է՝ որ Նոյայ տապանը Արարատ լերան վրայ (עַל הָרֵי אֲרָרָט ի լերինս Արարատայ, Ծննդ. 8, 4) նստած է։ Արարատ անունը այժմ կու տան Այրարատ կենդրոնական գաւառին ամենաբարձր միշտ ձիւնապատ լերան, որուն հին՝ այժմ ալ գործածական՝ անունն է Մասիս, զոր Տաճիկք կը կոչեն Աղըր տաղ։ Շրջակայից բազմաթիւ անունները ձեւափոխելով եւ բանազբօսիկ ստուգաբանութեամբ ի նպաստ այս տեղաւորման (Localisirung) յառաջ կը բերեն։ Նախջաւան քաղաքն անոր համար Նախիջեւան, այսինքն "առաջին իջեւան" կը կոչուի, վասն զի Նոյ առաջին անգամ այստեղ իջեւանեց. Ակոռի գիւղն իսկապէս ըլլալու է Արկ ուռի, այսինքն "տնկեց ուռի". Առնոյոտն գաւառն է "առ Նոյ ոտն", վասն զի Նոյ այստեղ տապանէն ելաւ։ Մարանդ քաղաքի անունն է "Մայր անդ", ուր է Նոյի կնոջ գերեզմանը։ Այս ամէն զրոյցներն անյաջող եւ շատ ուշ են յօրինուած։ Հնագոյն աւանդութիւնը չի գիտեր՝ թէ Նոյայ տապանը Մասիսի վրայ է իջած։ Ղազար Փարպեցի (Ե. դար) Այրարատ գաւառի՝ ոգեւորութեամբ գրած նկարագրութեան մէջ (գլ. Է. եւ Ը.) չի յիշեր բնաւ՝ որ Այրարատայ մէջ Նոյայ տապանին լեռը կայ։ Նոյնպէս Մովսէս Խորենացի ո՛չ Պատմութեան եւ ո՛չ Աշխարհագրութեան մէջ ամենեւին չի յիշատակեր։ Իսկ Փաւստոս Բիւզանդացի (Գ, 10) կ'աւանդէ՝ որ Ս. Յակոբ Մծբնացի տապանին մնացորդները գտած ըլլայ ի լերին "(Ս)արարադայ ի սահմանս այրայրա-

ոնեան անէրութեանն ի գաւառն Կորդուաց: „Ըստ այսմ Դ. դարուն Հայերն, ինչպէս նաեւ Ասորիք եւ Բաբելացիք, Նոյայ տապանին լեռը ոչ թէ Մասիսի սահմաններն, այլ Կորդուաց աշխարհին մէջ կը փնտռէին: Առաջինն, որ իբրեւ Մասիսը Նոյայ տապանի լեռը կը համարի, է Ս. Հերոնիմոս (Comm. in Jsaïam XI 38 vol. IV 1 p. 467 ed. D. Vallors.) Այսպէս ուրեմն օտար գիտնականներու կարկառանքն է այս, որ շատ ուշ — յամենայն դէպս ոչ յառաջ քան զԹ. կամ Ժ. դար — Հայաստան մուտ գտած է:

Հայաստանի պատմութեան համար ստիպուած ենք յունական-հռոմէական աղբիւրներով շատանալ, վասն զի ազգային պատմութիւնները, բաց ի Մ. Խորենացւոյ քով պահուած ազգային հին երգերու մնացորդներէն, մեծաւ մասամբ արժէք չունին եւ ուշ ժամանակներ հնարուած են:

Հայերն իրենց պատմական բնակավայրերն հաստատուելէն ետեւ՝ ի սկզբան Մարաց, յետոյ Պարսից գերիշխանութեան տակ մնացին: Դարեհ Ա.ի ժամանակ (521էն ի վեր) սատրապներու ընդհանուր ապստամբութեան մասնակցեցան նաեւ Հայք. բայց հինգ ճակատներու մէջ պարտեցան եւ այնուհետեւ Աքէմէնեանց տակ հանդարտ մնացին: Քսենոփոնի ժամանակ Հայաստան բաժնուած էր արեւելեան եւ արեւմտեան սատրապութեան: Յունաց տիրապետութիւնը լոկ անուանական էր, եւ այս ալ դադրեցաւ, երբ Անտիոքոս Մեծի երկու զօրապետները՝ Արտաքսիաս եւ Զարիադրիս, (Արտաշիաս եւ Զարահրատ) անոր Հռոմայեցիներէն 190ին պարտուելէն ետեւ, իրենք զիրենք անկախ թագաւոր հրատարակեցին, առաջինը բուն Հայաստան, երկրորդը Ծոփաց աշխարհը (հարաւ-արեւ.): Ստրաբոն, ԺԱ, 531 գ: Դրացի Իբերացւոց, Մարաց եւ Ասորւոց սահմանագաւառները շուտով

նուաճուեցան եւ կամաց կամաց հայացան։ Այն ժամանակ Հայաստանի քաղաքակրթութիւնը սերտ կապ ունէր Իրանի հետ։ Իւր աստուածութիւններն մեծաւ մասամբ անկէ փոխ առած է։ Արքունեաց եւ բարձր դասակարգի մէջ կ'իշխէին պարսկական սովորութիւններ. սպառազինութիւնը պարսկական էր։ Պարթեւաց ժամանակ այս հաղորդակցութիւնն աւելի անձուկ եղաւ։ Նշանաւոր նախարարական տոհմերը կը պարծէին իրենց պարթեւական ծագումովը։ Քաղաքական կազմակերպութեամբ՝ պետութիւնը զուտ աւատական էր, ինչպէս եւ պարթեւականը։ Իշխող բարձր ազնուականութիւնը՝ նախարարք, եւ ստորին ազնուականութիւնը՝ ազատանին, եւ հզօր հոգեւորականութիւնը միայն նշանակութիւն ունէին. իսկ ժողովուրդը կը կազմէին իշխող դասակարգերու հլու հպատակ ցեղերն։ Հայաստան իւր զօրութեան գագաթնակէտն հասաւ Տիգրան Ա.ի ժամանակ (իբր 90—55), որ Արտաքսիասի սերնդէն էր։ Տիգրան՝ զԱրտանէս, Զարիադրիսի վերջին յաջորդն գահընկեց ըրաւ եւ Ծոփքը միացընելով մի պետութիւն հիմնեց. դրացի փոքր իշխաններն (Մարք, Ատրպատական, Կորդուէք) եղան իւր աւատները։ Եւ այսպէս՝ անդադար Պարթեւները տկարացընելով, Արքայից Արքայ պատուանունն առաւ։ Ապա 86ին տիրեց Սելեւկեան իշխանութեան Ասորիք մնացեալ մասին, եւ այսպէս Հայաստան՝ որ Միհրդատայ Նոր բարգաւաճող պոնտական պետութեան սերտ դաշնակիցն էր, եղաւ մեծ պետութիւն։ Հին Հայոց ազգային երգերը զՏիգրան շատ կը փառաւորեն, որ օտար ազգերու վրայ հարկ դրաւ, իւր հպատակներուն ոսկի, արծաթ, ազնիւ քարեր եւ թանկագին զգեստներ կը բաշխէր, եւ հետեւակներն՝ հեծեալ, եւ պարսաւորները՝ նետաձիգ ըրաւ (Մ. Խոր. Ա 24)։ Մովսէս Խորենացի թիւր գիտնականութեամբ՝ Կիւրոսի ժամանակակից՝ Քենո-

փոնի վիպասանութեան մէջ գործող Տիգրանին վերագրեց զայն, մինչդեռ երգերը բնականաբար Ղուկուղղոսի ժամանակակիցը կը գովաբանէին։ Դիտելու արժանի է եւ այն, որ Տիգրան Հելլէնասիրական քաղաքականութեան կը հետեւէր, թէեւ բուն արեւելեան ոճով։ Յունական տասուերկու քաղաքներու բնակիչները բռնութեամբ իր նոր մայրաքաղաքն Տիգրանակերտ փոխադրեց. — կ'երեւայ որ կառավարութիւնը կ'ուզէր մինչեւ այն ատեն տիրող քաղաքակրթական արեւելեան աւանդութիւնները խզել նետել։ Սակայն Ղուկուղղոսի մեծ յաղթութիւնը (69) եւ Պոմպէոսի ձեռնարկութիւններն այս բարձրաթռիչ ծրագիրներուն յանկարծական վերջ տուին։ 66ի (յռջ. ք. զՔ.) խաղաղութեամբ Հայաստան իր նախնի սահմաններուն մէջ ամփոփուեցաւ։ Այս ժամանակէն սկսեալ անզօր եւ հովանւոյ տակ ապրող պետութիւնը կը տատանէր հռոմէական եւ պարթեւական գերիշխանութեան մէջ։ Այս մեծ պետութիւնները փոփոխակի թագաւոր կը դնէին։ Բայց իշխաններու եւ ազնուականութեան համակրութիւնը բոլորովին Պարթեւաց կողմն էր։ Այս պատճառաւ հռոմէական քաղաքականութիւնը շատ խոհեմ քայլ մ'առաւ, երբ Ներոն կայսրը՝ չնայելով Կորբուղոսի յաղթութեանց, 66ին (յետ Քր.) Պարթեւաց արքային արքային եղբայրը՝ Տրդատ, որ Հռոմ եկած էր հնազանդութիւն յայտնելու, հանդիսապէս թագաւոր ճանչցաւ։ Ասկէ սկսեալ՝ Արշակունեաց երկրորդ մէկ ճիւղը իշխեց Հայաստան մինչեւ պետութեան անկումը, եւ նոյն պետութիւնն անձուկ կապով կապեց Պարթեւաց պետութեան հետ։ Տրայիանոսի ժամանակ (114—17) Հայաստան թէեւ հռոմէական նահանգ եղաւ, բայց առժամանակեայ միայն, եւ որեւէ հետեւութիւն մը չունեցաւ։ Առաւել նշանաւոր եղաւ Հայաստանի համար Պարթեւ Արշակունեաց ան-

կումն եւ Սասանեան պետութեան հիմնուիլն ի Պարսս 226ին։ Հայ թագաւորներն, իբրեւ ազգական դահազուրկ օրինաւոր ժառանգներուն, մահացու թշնամի էին Պարսից արքայից արքաներուն։ Արդէն 238ին Հայոց Խոսրով թագաւորը Պարսից նենգութեամբը սպանուեցաւ։ Ասոր յաջորդող խառնակութեան ժամանակ Պարսիկներն յաջողեցան առ ժամանակ մի երկրին տիրել, եւ Հայերուն ատելի մազդեզանց կրօնը բռնի մուծանել, մինչեւ որ 261ին Ոդենաթ Պալմիրացւոյն յաղթութեամբն երկիրն իւր ազատութիւնը վերստին առաւ։ (A. v. Gutschmid, Kleine Schriften, Գ. էջ 402—։) Արքայորդին Տրդատ, որ Հռոմէական երկիրն ապաւինած էր, պետութիւնը վերանորոգեց, եւ կառավարեց Հռովմայեցւոց հետ սերտ կապ հաստատելով եւ Պարսից հետ անդադար պատերազմ մղելով։ Թագաւորին եւ ժողովրդեան ի քրիստոնէութիւն դարձն յառաջ բերաւ թէ Հռոմայ եւ թէ Հայաստանի շահուց նպաստաւոր Հռոմայեցւոց համակրող քաղաքականութիւն մը, որ վերջացաւ Յուլիանոսի ձախող արշաւանքովն եւ Յովիանոսի 363ի ամօթալի խաղաղութեամբը։ Պարսիկք տիրեցին Հայաստանի եւ Արշակ թագաւորն Պարսից ձեռքը գերի ինկաւ։ Վալէնս (Վաղէս) կայսրն տեսաւ այս մեծ սխալը եւ Արշակայ որդին Պապը գահ հանեց (367—74)։ Սակայն արքայական իշխանութիւնն ընկճեցաւ մեծազօր ազնուականութենէն եւ հոգեւորականութենէն։ Պետութեան վերջին լաւ շրջանն էր՝ հոգեւորականաց կողմնակից՝ Մանուէլ Մամիկոնեան նախարարին խնամակալութեան ժամանակը (378—85)։ 387ին Թէոդոս Մեծ չափաղանց կարճատես քաղաքականութեամբ պետութիւնը Պարսից հետ բաժնեց. Հռոմայեցւոց ձեռքը մնաց աննշան մաս մը արեւմտեան մասէն՝ Կարին (Թէոդուպոլիս) քաղաքով, մինչդեռ Հայաստանի հինգին չորսը Պարսից անցաւ։ Մինչեւ 428

Պարսից գերիշխանութեան ներքեւ կառավարեցին Հայ անուանական թագաւորներ. ապա Պարսիկները Մարզպաններ (կուսակալներ) դրին, որոնք յաճախ Հայ էին, եւ ընդհանրապէս Պարսիկները երկիրն արտաքոյ կարգի զգուշաւորութեամբ կը կառավարէին։ Շատ ապստամբութիւններ եղան ի նպաստ Բիւզանդացւոց, բայց առանց հետեւութեան մնացին. Հազիւ երբ Մաւրիկիոս կայսրը 591ին Խոսրով Պարվէզն իւր գահին վրայ հաստատեց, վերջինս գրեթէ ամբողջ Հայաստանը խաղաղութեան դաշամբ Հռոմայեցւոց տուաւ։ Հերակղ կայսեր յաղթութեամբը՝ Հայաստան 629ին դարձեալ Հռոմայեցւոց հովանաւորութեան տակ մտաւ, բայց անոր շուտով յաջորդեց արաբականը։ Խալիֆայից տիրապետութեան առաջին դարը՝ թէեւ աւերիչ արշաւանքներ անպակաս էին, ազգային եւ գրական բարգաւաճման դարագլուխ եղաւ. բայց Աբբասեանց ժամանակ արաբացի կուսակալներու՝ ոստիկաններու ձեռքն սաստիկ ծանրացաւ երկրին վրայ։ Սակայն հանճարեղն Աշոտ Ա. Բագրատունի, որ Հայոց հին Նախարարական մէկ տունէն էր, բայց կեղծեօք կը պարծէր իբր թէ աքսորեալ հրէական իշխանական ցեղէ մ'ըլլայ, յաջողեցաւ 855ին Իշխանաց իշխան ըլլալու եւ 885ին Խալիֆայէն արքունի թագ ընդունելու։ Նորահաստատ թագաւորութիւնն իւր մէջ ունէր ոչ միայն Հայաստանը, այլ նաեւ Աղուանք ու Վրաստան անոր գերիշխանութեան ներքեւ էին։ 913էն սկսեալ պետութիւնն այլ եւս հարկատու չէր, բայց անոր տեղ երկիրը մանր մանր թագաւորութեանց բաժնուեցաւ, որոնցմէ նշանաւորագոյնն էր Վասպուրականի Արծրունեաց թագաւորութիւնը։ Սելջուկեանց յարձակումներէն վախնալով՝ Արծրունեաց վերջին թագաւորն Սենեքերիմ 1021ին, եւ Գագիկ Բագրատունի 1045ին իրենց տէրութիւնները յանձնեցին Բիւզանդացւոց։ Սա-

կայն առնք ալ ոյժ չունէին սարսափելի վտանգին դիմադրելու։ Սելջուկեան հրոսակներու յարատեւ աճուելի աւերմունքները Հայոց քաղաքական եւ քաղաքակրթական կեանքին մահու հարուած տուին իրենց հայրենիքին մէջ։

Այս ասպատակութեանց ժամանակ բազմաթիւ Հայեր Տաւրոս եւ Կիլիկիա քաշուեցան։ 1080ին Ռուբէն, որ հաւանականաբար Բագրատունի էր, փոքրիկ իշխանութիւն մը հիմնեց եւ Նոր (Ռուբենեան) Հարստութեան հիմնադիրն եղաւ։ Իւր քաջարի յաջորդները հետզհետէ ամբողջ Կիլիկիան նուաճեցին։ Ասոնք Բիւզանդեանց հետ մեծաւ մասամբ շատ վատ յարաբերութեան մէջ էին, որով աւելի յարեցան Խաչակիրներու պետութեանց, ինչպէս որ Կիլիկիոյ այս հայկական իշխանութիւնը ներքին կազմակերպութեամբ կէս գաղղիական աւատական պետութիւն էր։ Լեւոն Բ. 1198ին թագաւոր պսակուեցաւ։ Ռուբենեանց յաջորդեցին 1342ին Կիպրոսի Լուսինեանք։ Այս պետութիւնն յենլով Մոնղոլներու եւ Արեւմուտքի՝ կը ջանար Եգիպտոսի Մամելուկներու յարձակմանց դիմադրել։ Բայց Լեւոն Զ. 1375ին ստիպուեցաւ իւր վերջին ամրոցը անոնց յանձնել, եւ 1391ին ի Պարիս վախճանեցաւ։ Այնուհետեւ Հայք երբէք անկախ պետութիւն մը չկանգնեցին։

## 2. Մատենագրութիւն։

Հայոց մատենագրութիւնը զուտ քրիստոնէական է։ Միայն Մ. Խորենացւոյ քով հեթանոսութեան ժամանակի հեղինակներէն քաղուածներ եւ հին ժողովրդական երգերու մնացորդներ կը գտնուին։ Եւ որովհետեւ ուսումնական կրթութիւնը, ինչպէս միջին դարու ուրիշ քրիստոնեայ ազգաց, նոյնպէս ալ Հայոց քով, գրեթէ առանց բացառութեան եկեղեցականաց սեպհականութիւն էր, այս պատճառաւ Հայոց գրականութիւնը

քիչ բացառութեամբ՝ աստուածաբանական է. եւ նոյն իսկ Հայոց բաւական բազմաթիւ պատմագրութիւններն յայտնապէս իրենց եկեղեցական հեղինակը մատնացոյց կ'ընեն: Մեր նպատակէն դուրս է՝ այստեղ հայ մատենագրութեան ամբողջական տեսութիւնն ընել. առ այս մտադիր կ'ընենք հետեւեալ հրատարակութեանց.

P. Sukias Somal, Quadro della storia letteraria di Armenia, Venezia 1829. — Նոյն՝ Quadro delle opere di vari autori anticamente tradotti in Armeno, Venezia, 1825. — C. F. Neumann, Versuch einer Geschichte der armenischen Litteratur, Leipzig 1836, որ վերոյիշեալ երկու գրքերուն գերմաններէն նոր խմբագրութիւնն է ճոխագոյն յաւելուածներով: — R. Patcanian, Catalogue de la littérature arménienne depuis le commencement du IV siècle jusque vers le milieu du XVII. „Mélanges asiatiques“ T. IV, livr. 1, St. Pétersbourg, 1860. — F. Nève, L'Arménie chrétienne et sa littérature, Loewen—Paris—Berlin, 1886. — Հ. Գարեգին, Հայկական մատենագիտութիւն (1565—1883) Վենետ. 1883. — Նոյն, Մատենադարան հայկական թարգմանութեան նախնեաց Վենետ. 1889: — Նոյն, Հայկական հին դպրութեան Պատմութիւն Դ—ԺԳ դար, Վենետ. 1863: — E. Dulaurier. Recherches sur la chronologie Arménienne, Paris, 1859. — Catalogue des livres de l'imprimerie Arménienne de S. Lazare, Venise, 1894.*

---

* Այստեղ յիշուած հեղինակներն հայ մատենագրութեան պատմութիւնն իրարմէ քաղած են, այնպէս որ դարուս սկիզբներն՝ առանց քննադատութեան ընդունուած կարծիքներ տակաւին կը շարունակուին աւանդուիլ: Անոր համար հայ մատենագրութեան սկզբնաւորութենէն մինչեւ Ժ դար աւանդուածները

Այստեղ կը յիշատակենք աստուածաբանական եւ պատմական նշանաւորագոյն հեղինակներն, որոնց գործերը տպագրութեամբ ծանօթացած են։

Հայ մատենագրութեան սկիզբն եղաւ հայ այբուբենից գիւտովն։ Դ. դարուն հայերն կամ ասորերէն կամ յունարէն եւ կամ պարսկերէն կը գրէին։ Անոր համար այս ժամանակէն համարուած մատենագրութիւններն ըստ մասին թարգմանութիւն եւ ըստ մասին կեղծ են։ Ս. Գրիգորի Լուսաւորչի Յաճախապատումն (Վենետ. 1838, Վաղարշապատ 1896 հրտրկ. Տէր-Միքէլեանի. գերմ. թրգմ. J. M. Schmid, Regensburg 1872) աւելի ուշ ժամանակի գործ է։ Կը կարծուի որ ասոր ժամանակակիցն Զենոբ Գլակ ասորի եպիսկոպոսն՝ որ յետոյ Տարօնոյ Ս. Կարապետի վանքին վանահայրն եղաւ, իւր վիճակին ի քրիստոնէութիւն դարձին պատմութիւնը գրած ըլլայ՝ ասորերէն լեզուաւ։ Ասոր միայն հայ թարգմանութիւնը կայ այժմ՝ Պատմ. Տարօնոյ, (Վենետ. 1832, գաղղ. Langlois, Collection I) եւ շարունակութիւնը ի Յովհաննէ եպիսկոպոսէ Մամիկոնեան, որ կը կար-

---

*միայն իբրեւ առժամանակեայ կարծիքներ նկատելու է: Փաւստոսի, Ագաթանգեղոսի, Եղիշէի, Խորենացւոյ նկատմամբ վերջին քննութիւնները տարբեր եզրակացութեանց կը յանգին: Թէեւ հեղինակին ծանօթ է այս քննութեանց մէկ մասը եւ ընդունած է անոնց եզրակացութիւնը, սակայն ինչ ինչ մնացած է անծանօթ որով եւ հին աւանդութիւնը կը կրկնէ, ինչպէս Փաւստոսի նկատմամբ աւանդածն՝ որ յոյն ըլլայ եւ Դ. դարուն, որ յայտնապէս Ե դարու հայ հեղինակ է (տ. Մալխասեան, Փաւստոս Բիւզանդ, Վիեննա 1896). Նոյնպէս Փիլոնի գործերը ոսկեդարու թարգմանութիւն կը դնէ՝ վերոյիշեալ հեղինակներու հետեւելով: Ինչպէս եւ առ հասարակ մատենագրութեան վրայ խօսող այս բաժինը՝ զուտ հետեւողութիւն է: Կը յուսանք որ օր մ'ունենանք հիմնական քննութեամբ եւ խորին հմտութեամբ գրուած պատմութիւն մը հայ մատենագրութեան:*

ծուի թէ Ը դարուն ապրած ըլլայ։ Երկու գործերն ալ պատմաբանօրէն արժէք չունեցող վիպագրութիւններ են, Ը կամ Թ դարէն, ինչպէս ցոյց տուաւ Գր. Խալաթեանց, Զենոբ Գլակ, Վիեննա, 1893։

Ագաթանգեղոսի՝ Հայոց Տրդատ թագաւորին քարտուղարին անուամբ կայ Պատմութիւն մ'այս թագաւորին եւ քրիստոնէութեան ի Հայս մուծուելուն։ Ասոր հայերէնը եւ յունարէն թարգմանութիւնը կայ։ Հայերէնն հրատարակեցաւ Վենետ. 1862, Տփղիս 1882, գաղղ. (անկատար) առ Langl. Coll. I., իտալերէն Վենետ. 1843։ Յունարէնը հրատարակեց Stilting ի գիրս Acta Sanct. 30 Սեպտ. Հատ. Ը. էջ 320—, եւ աւելի լաւագոյն Lagarde, Agathangelos, Anz. Gött. Gel. hist. phil. Cl. 35, 1889, էջ 1—։ Ագաթանգեղոս՝ այսօրուան վիճակին մէջ, 456էն ետքը այլեւայլ զատ զատ գործերէ (Վարք Ս. Գրիգորի, Վկայաբանութիւն Ս. Գրիգորի եւ Սրբոց Հռիփսիմեանց, Տեսիլ Ս. Գրիգորի) խմբագրուած է (Gutschmid, Kl. Schriften, III. էջ 394—.)։ Պատմական հաւատալիութիւն կրնայ ունենալ այն մասն՝ որ կը խօսի Ս. Գրիգորի վարուց վրայ, որ է բուն Հայոց ի քրիստոնէութիւն դարձին պատմութիւնը (Gutschmid, անդ էջ 420)։ Կարելի է որ այս մասն սկզբնաբար յունարէն կամ (ըստ Լագարդի) ասորերէն գրուած ըլլայ։

Շատ մեծ արժէք ունի Փաւստոս Բիւզանդացւոյ Պատմութիւնը, որ 317—90 տարիներու Հայոց պատմութիւնը՝ սոյն տարիներէն քիչ մը ետքը յունարէն գրած է։ Ասոր նշխարները կը գտնուին Պրոկոպիոսի քով (de bell. Pers. I, 5), իսկ ամբողջական գործը կայ միայն հայերէն թարգմանութեամբ (Վենետ. 1832, Պետերբ. 1889, գաղղ. Langlois I, 1883. գերմ. Lauer, Köln 1879)։ Փ. Բիւզանդացի թէեւ եկեղեցական նուիրապե-

տութեան ջերմ կուսակիցներէն է, սակայն Դ դարու պատմութեան համար ամենակարեւոր աղբիւր է (H. Gelzer. Die Anfänge der armenischen Kirche. Ber. d. Sächs. Gesell. d. Wiss. hist. phil. Cl. 1895, էջ 109—.)

Հայոց ազգային մատենագրութեան ստեղծիչն են Սահակ Կթղկս. († 439) եւ անոր բարեկամն ու ընկերն Մեսրոպ։ Մեսրոպայ այբուբենքն գտնելովը Հայերը կարող եղան մատենագրութիւն ունեցող ազգերու կարգը մտնել։ Մինչեւ այն ժամանակ Ս. Գրոց հայերէն թարգմանութիւն մը չկար. եւ ստիպուած էին Ս. Գրոց ընթերցուածներն՝ ինչպէս նաեւ աղօթքները եկեղեցեաց մէջ ասորերէն լեզուաւ կատարել, զոր ժողովուրդը չէր հասկընար, եւ ըստ մասին նաեւ յունարէն լեզուաւ։ Մեսրոպայ՝ Հայոց սեպհական այբուբենք մը հնարելու խորհուրդը Սահակ Կթղկս. եւ Վրամշապուհ թագաւորն (395—416) համակրութեամբ ընդունեցան։ Սահակայ հրամանաւ Մեսրոպ ասորական Միջագետք գնաց։ Դանիէլ ասորի եպիսկոպոսին ընկերութեամբն ըրած առաջին փորձերն ապարդիւն մնացին. ընդ հակառակն Հռոփանոս (Ռուփինոս) յոյն միանձնականին եւ գեղագրին օգնութեամբը կարելի եղաւ այբուբենքն հնարել, գլխաւորաբար յոյն այբուբենից հիման վրայ (H. Hübschmann, Ueber Aussprache und Umschreibung des Altarmenischen, ZddMG. 1876, էջ 53—. V. Gardhausen, Ueber den griechischen Ursprung der armenischen Schrift, անդ էջ 74—։)

Մինչդեռ Մեսրոպ երկու դրացի ազգերուն՝ Վրաց եւ Աղուանից համար ալ, որոնք Հայոց քաղաքակրթութենէն կախում ունէին, այբուբենք հնարեց, որով նաեւ այս երկու լեզուներու գրականութիւն տուաւ, Սահակ Ս. Գրոց թարգմանութեան սկիզբը ըրաւ։ Առջեւն ունէր միայն ասորի բնագիրը։ Վասն զի Պարսից պետութիւնը՝ որպէս

զի Հայերն Հռոմէական պետութեան եւ յունական քաղաքակրթութեան հետ ամենեւին մտաւորական կապ մը չունենան, Հայաստանի իւր մասին մէջ յունարէն գրքերն այրել տուաւ եւ յունարէն լեզուաւ դասաւանդութիւնն արգելեց։ Սահակ եւ Մեսրոպ տեսնելով որ ասով իրենց խորհուրդն իրագործել պիտի չկարենան, որոշեցին յունական մասն երթալ։ Ի Բիւզանդիոն առաքուած պատգամաւորութիւն մը, որուն գլուխն էր Մեսրոպ, սպասուած արդիւնքն ունեցաւ։ Հայաստանի յունական մասին կառավար Անատոլիոսին հրաման եկաւ՝ որ հայ քահանայից օգնէ անոնց այս ձեռնարկութեան մէջ։ Անմիջապէս խմբուեցան բազմաթիւ աշակերտներ եւ հիմնարկեցին Թարգմանչաց դպրոց մը, որ քիչ ժամանակէն վերջին աստիճանի զարգացաւ։ Եւ որովհետեւ Մեսրոպ յունարէնի մէջ այնչափ զօրաւոր չէր, թարգմանութեան գործն սկսաւ կաղալ։ Այս պատճառաւ իւր աշակերտներէն քաջագոյնները Կ. Պոլիս ղրկեց, որպէս զի այնտեղ երկար մնալով յունարէնը հիմնապէս ուսանին։ Ասոնք յետոյ վերադարձին՝ Ս. Գրոց, բազմաթիւ Ս. Հարց յունարէն բնագիրները եւ Նիկիոյ եւ Եփեսոսի ժողովոց կանոնները հայրենիք տարին։ Ասորի բնագրէ եղած թարգմանութիւններն հիմնապէս վերաքննուեցան, եւ հազիւ 432ին Ս. Գրոց թարգմանութիւնն աւարտեցաւ, որ եւ այնուհետեւ պաշտօնական թարգմանութիւն նկատուեցաւ։ Ս. Գիրքն անթիւ օրինակներ բազմացուեցաւ, եւ յետոյ երբ Արեւմուտքի հետ Հայերն աւելի անձուկ յարաբերութիւն ունեցան, լատին Ս. Գրքէն (Vulgata) կտորներ ներմուծուեցան։ Այսպիսի ներմուծեալ բնագիր մը, եւ այն՝ մի միակն, առջեւն ունէր Ոսկան եպիսկոպոս, որ 1666ին յԱմստերդամ Ս. Գրոց առաջին հրատարակութիւնն ըրաւ, նոյնն առանց փոփոխութեան տպագրուեցաւ 1705ին ի Կ. Պոլիս, եւ 1733ին

Մխիթար նոյնը շատ քիչ բարեփոխութեամբ տպագրեց ի Վենետիկ՝ Ոսկան, որ եւ ոչ իսկ Հայերէնը հիմնապէս գիտէր, իւր բնագրին ներմուծութիւններն բազմացուց կամայական կարծեցեալ բարեփոխութիւններով եւ լատին բնագրին յաւելուածներովը, եւ նաեւ աւելցուց երեք գիրք, որոնք իւր բնագրին մէջ չկային, այն է Յեսու Սիրաք, Դ. Եզր եւ Թուղթ Երեմեայ, զորոնք ինք լատիններէնէ թարգմանեց: — Հազիւ 1805ին Վենետիկի Մխիթարեանց ձեռօք Ս. Գրոց քննադատական հրատարակութիւն մ'եղաւ, համեմատութեամբ ինը ձեռագրաց, որոնց մէջէն հնագոյնն ու լաւագոյնը՝ որ 1310ին գրուած էր, իբրեւ հիմն առնուեցաւ, եւ ընթերցուածոց տարբերութիւնները խնամով բնագրին տակ նշանակուեցան: Հրատարակիչն Հ. Յովհ. Զօհրապ, ընդարձակ յառաջաբանին մէջ մանրամասն համար կու տայ գործածած ձեռագիրներուն եւ իւր հրատարակութեանը վրայ, եւ կը հաստատէ՝ որ հին կտակարանի հայ թարգմանութիւնն Որոգինեայ Վեցիջեանին համեմատ պէտք է որ եղած ըլլայ, վասն զի հայ բնագրին մէջ կան բազմաթիւ որոգինեան աստղանիշեր. թէեւ ընդօրինակողներ զայն շատ անգամ սխալ տեղեր նշանակած են: Ձեռագրաց համեմատ՝ Ս. Գրոց կարգն այս է. "Հին կտակարան՝ Ծնունդք, Յեսու, Դատաւորք, Հռութ, 4 Թագաւորք, 2 Մնացորդք, 2 Եզր, Նէեմի, Եսթեր, Յուդիթ, Տովբիթ, 3 Մակաբայեցիք, Սաղմոսք, Առակք, Ժողովող, Երգ երգոց, Իմաստութիւն, Յոբ, Եսայի, Ովսէէ, Ամովս, Միքիա, Յովէլ, Աբդիաս, Յովնան, Նաւում, Ամբակում, Սոփոնիա, Անգէ, Զաքարիա, Մաղաքիա, Երեմիա, Թուղթ Բարուքայ, Ողբք, Դանիէլ, Եզեկիէլ„: Միտ դնելու է որ այս կարգը Սիոն Կթողկս.ին 768ին Պարտաւայ (Berdaa) ժողովոյն մէջ սահմանած կարգաւորութենէն քիչ մը կը տարբերի: Ասիկայ 22դ. կանոնին մէջ կը սահ-

մանէ (Պատմ. ժողովոց, Վաղարշապատ, 1874, էջ 99). «Սուրբ Գիրք համարեցին ի Հին Օրինաց ազգս՝ Ծննդոց, Ելից, Ղեւտացւոց, Թւոց, Բ. Օրինաց, Յեսուայ, Դատաւորաց, Հռութայ, Դ Թագաւորաց, երկու գիրք Մնացորդաց, երկու գիրք Եզրայ, Տոբիթայ, Յուդիթայ, Եսթերայ, Մակաբայեցւոց, չորս Գիրք Սողոմոնի, Յոբայ, Սաղմոսք Դաւթի, գիրք ԺԲ Մարգարէից, Եսայեայ, Երեմիայ (ընդ որ իմանի եւ Բարուքայն), Եզեկիէլի եւ Դանիէլի եւ Իմաստութիւն Սիրաքայ:» — Նոր կտակարանի կարգն է՝ Գործք Առաքելոց, Թուղթ Յակովբու, 2 Թուղթք Պետրոսի, 3 Թուղթք Յովհաննու, Թուղթ Յուդայի, եւ 14 Թուղթք Պաւղոսի, որոնցմէ Թուղթն առ Եբրայեցիս յառաջ է քան զԹուղթն առ Տիմոթէոս, եւ ի վերջոյ Յայտնութիւն: Այս գրքերու սկիզբը կայ Նախադրութիւն մը եւ գրքին Գլխակարգութիւնը, որոնք ի սկզբանէ գրքերու հետ յունարէնէ թարգմանուած են, թէեւ անոնց յոյն բնագիրն այսօրս կորսուած է: Սակայն Նախադրութիւն եւ գլխակարգութիւն կայ նաեւ Յայտնութեան սկիզբը, որուն թարգմանութիւնը, ինչպէս հրատարակիչը կ'ապահովցընէ, Ը դարէն յառաջ չի կրնար եղած ըլլալ (տես Նախաբանութիւն էջ 20*), որ եւ հաւանականագոյնս ի սկզբան կանոնական գրոց մէջ չէր, վասն զի անկէ եկեղեցական պաշտամանց մէջ ընթերցուածներ առնուած չեն: Նոյն բանն է Սիրաքայ գրքին նկատմամբ, որ նաեւ նախադրութիւն եւ գլխակարգութիւն չունի, անոր համար հրատարակիչն զայս ուրիշ քանի մ'անվաւերականներու հետ իբրեւ Յաւելուած Դ. Հատորին վերջը դրած է, թէեւ անկատար: Հապա վերջերս գտնուեցաւ

* Նորագոյն հետազօտութեանց համեմատ՝ Յայտնութիւնը կ'երեւայ թէ արդէն Ե դարուն թարգմանուած էր, զոր յետոյ Ն. Լամբրոնացի վերստին թարգմանեց:

Սիրաքայ հին թարգմանութիւնը, զոր արդէն Մովս. Խորենացի Պիտոյից գրոց մէջ 1, 2 ի վկայութիւն կը կոչէ, եւ 1833ին ի Վենետիկ զատ տպագրեցաւ: Անոր յաջորդող Սիրաքայ Բանքն* ուրիշ կողմանէ ծանօթ չէ: Բայց ասկէ այս Յաւելուածին մէջ կան՝ 1. Գ. Գիրք Եզրայ, որ սովորաբար Դ. գիրք կը կոչուի, բայց մինչեւ ցայսօր ծանօթ բնագիրներէն շատ կը տարբերի. 2. Աղօթք Մանասէի. 3. Անվաւերական Գ. թուղթ Պաւղոսի առ Կորնթացիս (որուն լատին թարգմանութիւնն ալ այժմ գտնուած է եւ հրատարակուած՝ A. Carrière et S. Berger, Paris, 1891, A. Harnack, „Theol. Lit.-Ztg.“ 1892, էջ 7—:) Ձեռագիր Աստուածաշունչերու մէջ այս թուղթն երբեմն Բ. Կորնթացւոց թղթոյն կը յաջորդէ եւ երբեմն Պաւղոսի 14 թղթերէն ետքը կը դրուի: Անիկայ առաջին անգամ հրատարակեց D. Wilkins 1715ին յԱմստերդամ, յետոյ Whistons իրենց Մ. Խորենացւոյ հրատարակութեան մէջ, Լոնդոն 1736 էջ 367—, նոյնպէս Աստուածաշունչի Զօհրապեան հրատարակութեան մէջ: Նաեւ W. F. Rinckի գերմաներէն թարգմանութիւնը՝ օգնութեամբ Հ. Յարութիւն Աւգերեանի, տպուած Հայդէլբերգ 1823ին, արժէք ունի: Ի վերջոյ P. Vetter, Der apokryphe dritte Korintherbrief (Վիեննա, Մխիթարեան տպ. 1894) հրատարակութիւնը, որ մատենագիտական եւ պատմական ամենակատարեալ ներածութիւն մ'ունի. 4. Հանգիստ Յովհաննու Աւետարանչի, ուր կ'աւանդուին իւր վերջին խօսքերն եւ մահը: Ձեռագրաց մէջ այս գիրքը սովորաբար Յայտնութեան կից կը գտնուի. անիկայ մեծապէս յարգի կը համարուէր, շատ գիտնականներ ի վկայութիւն կը կոչէին, Ն. Լամբրոնացի անոր մեկնութիւնը գրած է, եւ եկեղեցւոյ մէջ ընթերցուածոց կարգն ան-

* Թուղթն Նեեմիայ:

նուած էր*։ 5. (Համառօտ) աղօթք Եւթաղեայ, որ ամէն ձեռագրաց մէջ կաթողիկեայ թղթերէն ետքը կը գտնուի, եւ յառաջագոյն Պենտեկոստէի նախորդ օրը, յետոյ Պենտեկոստէի օրը պատարագի մէջ կը կարդացուէր։ Մխիթար Այրիվանեցի յառաջ կը բերէ Ս. Գրոց կարգաւորութիւն մը՝ որ շատ նորանշան մասեր ունի եւ որ Յովհ. Սարկաւագ Վ.ին (ԺԱ դար) կը վերագրուի (M. Brosset, Histoire chronologique par Mkhithar d'Aïrivank (XIII S.), Mémoires de l'Académie de St. Pétersb. VII. sér. T. XIII N. 5, p. 23—**.)

Կորեան վստահելի վկայութեան համեմատ՝ թարգմանիչք բաց ի Ս. Գրքէն, գլխաւորաբար Ս. Հարց գործերն եւ Ս. Գրոց մեկնութիւնները հայերէնի թարգմանեցին, եւ այս՝ հայ գրականութեան հոգեւոր-եկեղեցական նկարագիր մը տուաւ առաջին վայրկենէն իսկ։ Հայք Ե. դարը կ'անուանեն Թարգմանչաց դար (Եւս. Քրոն. Հրատարակ. Հ. Մ. Աւգեր, Ա. Յառաջբ. էջ 7)։ Կը զանազանեն նաեւ առաջին թարգմանչաց ոսկեդար՝ իբր 442ին, եւ կրտսեր թարգմանչաց դար՝ 466ին։ Այս ժամանակամիջոցներու մեծ մասը անստոյգ կարծիք է. եւ վերաքննութեանց կարօտ։

Ամենահին թարգմանութիւններէն են Պատարագամատոյց. (Մաշտոց, Վենետ. 1831) կարգաւորութիւն հասարակաց աղօթից, (Վենետ. 1777.) Եւսեբեայ Եկեղեցական պատմութիւնը (Հրատրկ. Հ. Ա. Ճարեան Վենետ. 1877) եւ Վարք Ս. Անտոնի յօրինեալ ի Ս. Աթանասայ***։

* *Տես* Catergian P. J. Ecclesiae Ephaesinae de obitu Joannis Apostoli narratio. Viennae, 1877.

** Zahn Th. Ueber einige armenische Verzeichnisse kanonischer und apokrypher Bücher: Forschungen, V. Th. 1893, S. 109—157.

*** *Տե՛ս աղքատ ցուցակ մը՝ ամենահին թարգմանութեանց։ Մինչդեռ բուն Ե դարու թարգմանու-*

Այն թարգմանութիւններէն, որոնց յոյն բնագիրը կորսուած է, առաջին ոսկեդարուն կը համարուին հետեւեալները. 1. Փիլոնի երկու գիրք Յաղագս նախախնամութեան (P. Wendland, Philos Schrift über die Vorsehung, Berlin 1892), եւ մէկ գիրք Յաղագս կենդանեաց, թէ արդեօք բանաւորութիւն ունին (Հայ-լատիններէն հրտրկ. Հ. Մ. Աւգերեան, Վենետ, 1822)։ Դարձեալ՝ չորս գիրք Մեկնութեան Ծննդոց այլեւայլ տեղեաց, երկու գիրք Մեկնութեան Ելից, ճառ ի Սամփսոն, ի Յովնան, եւ յերկս Մանկունս կամ ի Հրեշտակս, որ երեւեցան Աբրահամու (Հայ-լատիններէն հրտրկ. Հ. Մ. Աւգերեան, Վենետ. 1827)։ Փիլոնի ուրիշ այլեւայլ գործերն, որոնց յոյն բնագիրը կայ (Յաղագս Հեսեանց, կենաց եւ վարուց իմաստնոց եւն 1892ին) հայերէն հրատարակուեցան ի Վենետիկ։

2. Եւսեբեայ Քրոնիկոնը, որուն առաջին մասը՝ միայն հայերէն կը գտնուի։ Հ. Մ. Աւգերեան առաջին գրոց եւ ժամանակագրութեան տպագրութիւնը հայ-լատիններէն տպագրելու պատրաստած էր արդէն 1795ին, սակայն տպագրութիւնն ուշացաւ, եւ Զօհրապ, որ Աւգերեանի պատրաստած բնագիրը ապօրինաւոր կերպով ձեռք բերած էր, կանխեց, եւ 1818ին Միլան լատին թարգմանութիւնը հրատարակեց, եւ յետոյ նոյն տարին նաեւ Աւգերեան ի Վենետիկ։ Niebuhr (Historischer Gewinn aus der armenischen Uebersetzung des Eusebius, Kl. hist. u. philol. Schriften, I. էջ 179—) եւ St.-Martin Զօհրապի պաշտպան եղան եւ Աւգերեանի հրատարակութեան գիտնական արժէքը նսեմացուցին։ Հապա H. Petermann ի հրատարակութեան A. Schöneի (Ա. գիրք

---

Թիւնները վարն իբրեւ Ե դարուն “համարուող„ կը յիշատակուին:

1876 Բ. գիրք 1866) Աւգերեանի գործոյն արժէքն յերեւան հանեց: Հայերէն բնագիրը, որ վստահելի չէ, ունի միայն Աւգերեան: Պետերմանի գործածած ձեռագիրներն ընդօրինակուած են՝ այժմ Էջմիածինն գտնուող ձեռագրէ մը (ԺԲ. դար): Th. Mommsen, Die armenischen Handschriften der Chronik des Eusebius: Hermes, 1895, էջ 325—:

3. Ջատագովութիւն Արիստիդեայ: Արիստիդեայ իմաստասիրի Աթենացւոյ խօսք, հայ-լատին վենետիկ, 1878 (P. Vetter, Aristidescitate in der armenischen Litteratur, Th. Q. S. Tübingen, 75ր. տարի, էջ 529—:)*

4. 15 Ճառք Սեբերիանոսի Գաբաղացւոյ որոնցմէ միայն երեքին յունարէնը կայ, հայերէն հրատ. վենետ. 1830, հայ-լատին հրատ. Հ. Մ. Աւգերեանի, վենետ. 1827:

5. Աստուածաշնչի մեկնութիւն Եփրեմի Ասորւոյ, Ճառք եւ խօսք, հայ հրատ. 4 հատ. վենետ. 1836: Գիրք աղօթից, հայ. վենետ. 1879**: Մեկն. Պաւղոսի թղթոց, լատին թրգմ. վենետ. 1893: Եփրեմ գրած է նաեւ Մեկն. Գ. թղթոյն առ Կորնթացիս (գերմ. թարգմ. կանայեանց եւ Հիւբշման առ Zahn, Gesch. d. neutestam. Kanons II 1891, էջ 595—, Vetterի հրատ. էջ 70—:)

Նոյնպէս այս ժամանակէն կը համարուին, Մեծին Բարսղի Մեկն. վեցօրէից, հայ. վենետ. 1830: Ճառք Յովհ. Ոսկեբերանի: Այլեւայլ ճառք, վենետ. 1861: Մեկն. Մատթէի, վենետ. 1826, Թղթոցն Պաւղոսի, վենետ. 1861: Մարգարէին Եսայեայ, վենետ. 1880: Կիւրղի Երուսաղեմացւոյ

---

* Ասոր ամբողջական ասորի բնագիրն այժմ գտնուած եւ հրատարակուած է, ինչպէս նաեւ յոյն բնագրի մասերը:

** Ա. տպ. Կ.Պոլ. 1734:

Կոչումն ընծայութեան, Կ. Պոլիս 1727, Վիեննա, 1832։ Վարք Հարանց, Վենետ. 1855*։ Նոյնպէս ճառք Աթանասայ, Գր. Աստուածաբանի, եւն։

Սրանք Թարգմանչաց դասուն կը վերագրուին՝ Թարգմանութիւնք գրոցն Պղատոնի՝ Եւթիփրոն, Պաշտպանութիւն Սոկրատայ եւ Տիմէոս, Հրատրկ. Հ. Ա. Սուքրի, Վենետ. 1877։ Յաղագս օրինաց եւ Մինովս, Վենետ. 1890. (F. C. Conybeare, On the ancient Armenian version of Plato Class. Rev. III 8,.էջ 340—. On the Armenian version of Platos Laws: Amer. Journ. of Philol. XII էջ 399—. A collation of the ancient Armenian version of Platos Laws, books V եւ VI. անդ, XV էջ 31—.) Դաւթի փիլիսոփայի Թարգմանութիւնն Ստորոգութեանց Արիստոտէլի եւ յաղագս մեկնութեան, Ներածութիւն Պորփիւրի. Վենետ. 1833 (Anecdota Oxoniensia vol. I. Part, VI. A collation with the ancient Armenian versions of the Greek text of Aristotle's Categories, de interpretatione, de mundo, de virtutibus et vitiis and of Porphyry's introductio by Fr. Conybeare, Oxford 1892. Neumann, Mémoire sur la vie et les ouvrages de David philos. arménien du V siècle, Paris, 1829). Կալլիսթենեայ Պատմ. վարուց Աղեքսանդրի, Վենետ. 1842. Ἱστορία Ἀλεξάνδρου, Die armenische Uebersetzung der sagenh. Alexander-Biographie auf ihre muthmassliche Grundlage zurückgeführt, v. R. Raabe, Leipzig 1896.**

Թուղթք Իգնատիոսի, թարգմանեալ յասորւոյն, ըստ Համառօտ խմբագրութեան, Կ. Պոլ. 1783.

---

* Ա. տպ. ի Ջուղա 1641, եւ Կ.Պոլ. 1721:

** Տաշեան Հ. Յ. Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի, Վիեննա 1892:

վերստին Հրտրկ. Պետերման, Լայպցիգ 1849։ Դարձեալ գործք Հիպպողիտեայ, Նոննոսի (Մեկնութիւն առասպելաց առ Գրիգորի Նազիանզացւոյ,) Եպիփանու, Գրիգորի Աքանչելագործի, Գր. Նիւսացւոյ, Դիոնեսիոսի Աղեքսանդրացւոյ, Տիմոթեայ, Թէոփիլոսի եւ Կիւրղի Աղեքսանդրացւոյ, Եւթաղեայ են։

Ս. Ղազարու Մխիթարեանք, որոնք այս թարգմանութեանց հրատարակութեան մէջ անհուն մեծ արդիւնքն ունին, Ս. Հարց հայերէն թարգմանութեանց ամբողջական հրատարակութիւն մը կը պատրաստեն։ Նախ պիտի հրատարակեն Հին եւ Նոր կտակարանաց անվաւերականքն (արդէն ընդ մամլով), այնուհետեւ Աթանասի գործերը։

Հայոց սեպհական մատենագրութիւնը՝ գրեթէ առանց բացառութեան՝ պատմական եւ աստուածաբանական է։ Մեսրոպայ աշակերտներէն՝ յիշուելու արժանի է Եզնիկ Կողբացի. ատիկայ գրեց Ընդդէմ աղանդոց (դպրոցաց) չորս գիրք, առաջինն ընդդէմ հեթանոսաց, երկրորդն՝ ընդդէմ Պարսից, երրորդն՝ ընդդէմ փիլիսոփայից Յունաց, եւ չորրորդն ընդդէմ Մարկիոնեանցն եւ Մանիքեցւոց. տպագրեցաւ 1761ին ի Զմիւռնիա, 1826ին ի Վենետիկ*։ Գաղղ. թարգմանութիւն Le Vaillant de Florival, Paris, 1853, եւ Պարսից վերաբերեալ մասը Langlois II, էջ 369—**։ Գործոյն իբրեւ յաւելուած դրուած է հոգեւոր խրատներ, որոնք սակայն Նեղոսին կը համարուին։ — Կորիւն, նոյնպէս աշակերտ Ս. Մեսրոպայ, 442էն անմիջապէս ետքը գրեց իւր ուսուցչին կենսագրութիւնը, որ հայ մատենագրութեան սկզբնաւորութեան ժամանակակից եւ վաւերական մի միակ տեղեկագրութիւնն է, Հրտրկ. 1833ին ի Վենետ. (ընդ գործո

* 1850. Պարիս 1860. Կ. Պոլ. 1864, 1869, 1873:
** եւ Կ. Եզեան, ռուսերէն 1858:

Դաւթի փիլիսոփայի եւ ընդ ճառս Մամբրէի)․ Սոփերք հայկականք ԺԱ 1854 Վենետ.*, գերմ․ Welte, Tübingen 1841. գաղղ․ Langlois II, էջ 9—։ — Մամբրէի գործերէն միայն երկու ճառ հրատարակուած է։

Աւելի համբաւաւոր է սոր եղբայրն Մովսէս Խորենացի։ Իւր ճանապարհորդութիւնն յԵդեսիա, յԱղեքսանդրիա, ի Հռոմ եւ յԱթէնս, եւ թարգմանչական գործունէութիւնն մինչեւ ցխոր ծերութիւն՝ գիտենք ուշ ժամանակ յօրինուած եւ անոր անունը կրող Պատմութենէն։ Անշուշտ իրաւամբ կը տրուի իրեն "Գիրք պիտոյից" կոչուած գործը․ A. Baumgartner, Ueber das Buch „die Chrie", ZdmG. 1887, էջ 457—։ Սակայն Մովսէս իւր համբաւը պարտական է Պատմ․ Հայոց գործոյն՝ յերիս գիրս, որ մինչեւ ցմահ Ս․ Մեսրոպայ 440 կը հասնի, որ եւ Հայաստանի նախաքրիստոնէական ժամանակի պատմութեան միմիակ ազգային աղբիւրն է։ Հնագոյն պատմութեան համար իւր գլխաւոր աղբիւրն է Մար Աբաս, որ 383էն առաջ** Հայոց պատմութիւն մը գրեց ասորի ·լեզուաւ․ Մարաբասի համառօտութիւնը կայ՝ բաց ի Մ․ Խորենացիէն***, նաեւ առանձինն, որ ձեռագրաց մէջ Սեբէոսի Պատմութեան կցուած կ՚ըլլայ։ Սեբէոս հրտրկ․ Պատկանեան էջ 1—10․ գաղղ․ Langlois I էջ 195—, Le Pseudo-Agathange, v. Gutschmid, Kl. Schr. III, էջ 317—, 334—․ P. Vetter, Das Buch des Mar Abas von Nisibis, Festgruss an R. v. Roth, Stuttgart 1893, էջ 81—։ Մովսիսի անուամբ մեզի հասած Պատմութիւնը Է կամ թերեւս ի սկզբան Ը դարու շինուած է։ Հեղինակը

---

* եւ 1894:

** Յետ Քրիստոսի:

*** Այժմ Մարաբասի կտորներ գտնուած են արաբական լեզուաւ եւ ասորի գրով (կարշունի): Տես "Հանդէս Ամսօրեայ" 1897, Թ. 1:

գիտէ 536ին Յուստինիանոսի կարգադրութիւնն՝ Հայաստանի չորս գաւառներու բաժնուիլը, Պրոկոպիոսի՝ Տիգրիսի արձանագրութիւնը, եւ Է դարու վերջը թարգմանուած Սոկրատայ Եկեղեցական պատմութիւնը կը գործածէ։ Խորենացւոյ Պատմ. Ա. տպ. 1695 Ամստերդամ, լատին թարգմանութեամբ հանդերձ Վիստոն Եղբարք 1736ին հրատարակեցին, որ այն ժամանակի համար զարմանալի էր. լաւագոյն հրտրկ. Մխիթարեանցն ի Վենետ. 1843, Մատենագրութիւնք Մ. Խորենացւոյ։ Գաղղ. թարգմ. Le Vaillant de Florival, Paris (1847), Langlois II, էջ 45—, իտալ. թարգմ. Tomaseo, Վենետ. 1850, 1851, գերմ. Lauer, Ռեգենսբուրգ 1869, ռուսերէն Էմին ի Մոսկուա 1858*։ Ինչպէս պատմութիւնը, նոյնպէս աշխարհագրութիւնը, որ Մովսէսի կը տրուի, միեւնոյն հեղինակէն է, որ համառօտութիւնն է Պապպոսի Աղեքսանդրացւոյ գաւառագրութեան, որով անուղղակի նաեւ Պտղոմէոսի։ Հայաստանի, Պարսկաստանի եւ դրացի տեղեաց ստորագրութիւնը հեղինակին յատուկ է։ Աշխարհագրութիւնը պատմութեան հետ հրատարակեցին Վիստոնք, վերստին St.-Martin, Mémoires II. էջ 318— աննշանակ ծանօթութեամբք եւ գաղղ. թարգմանութեամբ։ Շատ հետաքրքրական, անկախ մասերու մէջ բոլորովին տարբեր եւ ըստ մասին աւելի ճոխ խմբագրութիւն է այն ձեռագիրը, զոր Ա. Սուքրի հայ. եւ գաղղ. հրատարակեց ի Վենետ. 1881։ (A. v. Gutschmid, Ueber die Glaubwürdigkeit der armen. Geschichte des Moses von Khoren, Kl. Schr. III, էջ 282—։ Նոյնը՝ Moses von Chorene, անդ էջ 332—։ A. Carrière, Moïse de

---

* եւ 1893: Աշխարհաբար թարգմ. Ստեփանէ Խորէն Վ., Պետերբ. 1889: Հունգարերէն՝ Szongott K. ի Սամոշույվար 1892:

Khoren et les généalogies patriarcales, Պարիս, 1891։ Նոյնը՝ Nouvelles sources de Moïse de Khoren, Վիեննա 1893*։)

Եղիշէ Վարդապետ Հայոց ամենամեծ պատմագիրներէն է․ գրեց «Վասն Վարդանայ եւ պատերազմին Հայոց», որ է Յազկերտ Բ․ի ժամանակ (439—51) Հայոց ընդդէմ Պարսից մղած պատերազմներու պատմութիւնը։ Աստ կցուած է յետոյ իբրեւ յաւելուած՝ Հայ նախարարաց եւ քահանայից ի Պարս հալածանաց եւ մարտիրոսութեան նկարագրութիւնը**։ Իտալ. Հրտրկ. Cappelletti, 1840, անգղ. C. F. Neumann, Լոնդոն 1830, գաղղ. Langlois II, էջ 177—, ռուս. Շանշեան, Տփղիս, 1853***։ Եղիշէի Մատենագրութիւնքն (Հրտրկ. Վենետ. 1859) կը բովանդակեն նաեւ կրօնական ճառեր, որոնցմէ նշանաւորն է «Բան խրատու յաղագս Միանձանց»։

Իրեն գրեթէ ժամանակակիցն Ղազար Փարպեցի գրեց Պատմ. Հայոց յամէն 388—485, իբրեւ շարունակութիւն Փաւստոսի, զոր այնպէս կը յարգէ։ Ղազար շատ նշանաւոր պատմագիր է, եւ նաեւ իւր ազգային մասին զարմանալի անկողմնակալութիւն ցոյց կու տայ։ Հրտրկ. Վենետ. 1793 եւ 1873†, գաղղ. Կեսարեան առ Langlois II, էջ 253—։

---

* Եւ ասոր Supplément, անդ, 1894։ Նոյնը՝ La légende d'Abgar dans l'Histoire d'Arménie de Moïse de Khoren. Պարիս, 1895։ Ասոր հայ թարգմ. Մէնէվիշեան Հ. Գ. Վիեննա 1897։ Խալաթեան Գր. Армянскій Эпосъ, I. Մոսկուա, 1896։

** Հայ. Ա. տպ. Կ. Պոլ. 1764։ Լաւագոյնն ըստ Անձեւացեաց օրինակի Թէոդոսիա 1861 եւ Մոսկուա 1892։

*** Աշխարհաբար թարգմ. Ղուկասեանց Հ. Թիֆլ. 1891։

† եւ 1891։

Յովհ. Մանդակունւոյ, որ 480—87 կաթողիկոս էր, կը տրուի 22 ճառ, տպ. ի Վենետ. 1837*: Այսր այլեւայլ աղօթքները հայ ժամակարգութեան մէջ առնուած են:

Զ. դարէն չկայ ծանօթ հեղինակ մը: Յովհ. Մամիկոնեան Է դարէն կը համարուի: Իբրեւ պատմական աղբիւր մեծ կարեւորութիւն ունի Սեբէոսի Պատմ. ի Հերակլն: Յառաջաբանին մէջ յայտնապէս կ'ըսէ որ նախորդաց (անշուշտ Եղիշէի) շարունակութիւնը կը գրէ: Համառօտակի կը պատմէ Պերոզի (457—89) պատմութիւնը մինչեւ Մաւրիկիոսի խաղաղութիւնը (591). ընդարձակ կը խօսի ժամանակակից դիպաց վրայ, կը յիշէ Հռոմայեցւոց պատերազմները ընդդէմ Պարսից եւ Արաբաց, մինչեւ Մուավիեվի ինքնիշխան խալիֆայութիւնը (661): Հրատ. Կ. Պոլ. 1851, Պատկանեան ի Պետերբ. 1879, ռուս. Պատկանեան Պետերբ. 1862, պատմութեան վերջին մասը գերմ. H. Hübschmann, Zur Geschichte Armeniens und der ersten Kriege der Araber aus d. Armen. des Sebêos, Leipzig, անթուական**:

Թէոդորոս Քռթենաւոր ունի երեք ճառ, որոնց մին Մայրագոմեցւոց հերետիկոսական աղանդոյն դէմ, տպ. Վենետ. 1833 (Յովհ. Օձնեցւոյ գործոց հետ): Ճառ յԱրմաւենեացն օր՝ Սահակայ Գ. կթղկսի:

Այս դարու մէջ շատ համբաւաւոր է աստղագէտն եւ թուաբան Անանիա Շիրակացի, որ յունական կրթութիւն առած էր: Հրատ. Պատ-

---

* *եւ 1860: Գերմաներէն* J. M. Schmid, *Ռեգենսբուրգ, 1871: Տես նաեւ Սարգիսեան Հ. Բ. Քննադատութիւն Յովհ. Մանդակունւոյ եւ իւր երկասիրութեանց վրայ, Վենետ. 1895:*

** *Ն. Մառ գրեց Սեբէոսի եւ Մ. Խորենացւոյ մասին ի թերթին* Византійскій Временникъ 1894 II. *(Տես "Հանդէս Ամսօրեայ„ 1895 էջ 18—:)*

կանեան, Պետերբ. 1877։ Այս դարուս վերջերը Սոկրատայ եկեղեցական պատմութիւնը հայերէն թարգմանուեցաւ*, եւ հայ մը, որ Բիւզանդեան եկեղեցւոյ յարած էր, գրեց Հայոց եկեղեցւոյն համառօտ պատմութիւնը ի Գր. Լուսաւորչէ մինչեւ իւր ժամանակը, որ պատմաբանօրէն աննշանակ չէ, բայց կուսակցական ոգւով գրուած է. ոչ այնչափ լաւ հրատարակուած առ F. Combesis, Historia haeresis Monothelitarum, Sp. էջ 272—։

Ը. դարէն յիշատակութեան արժանի են՝ Յովհ. Օձնեցի կաթողիկոս. "իմաստասէր" անուանեալ, ունի Ատենաբանութիւն մը, վերջին օծման մասին կանոններ, եւ ի մասնաւորի Պաւղիկեանց դէմ ճառ մը, նոյնպէս եւ Եւտիքեանց դէմ ճառ մը, որոնք նշանաւոր են, եւ ամէնն ի միասին հայ. 1833ին, լատ. թարգմ. հանդերձ 1834ին Վենետիկ հրատարակուած է։ Իւր ժամանակակիցն Ստեփանոս Արքեպիսկոպոս Սիւնեաց, որ երկար ատեն Կ. Պոլիս բնակելով յունարէնի քաջ տիրած էր, թարգմանեց Դիոնեսիոսի Արիոպագացւոյ, եւ Կիւրղի Աղեքսանդրացւոյ (տպ. Կ. Պոլ. 1717), Նեմեսիոսի յաղագս բնութեան մարդոյ (Վենետ. 1889) գործերը. Աթանասայ, Գր. Նիւսացւոյ եւն այլեւայլ գործերը, եւ Թուղթն Գերմանոսի Պատրիարքի առ Հայս։ Այս դարուս մէջ հայերէն թարգմանուեցան՝ Գրիգոր Պիսիդա, Հիւսիքոս Երուսաղեմացի, Թէոդորոս Անկիւրացի, Եւագր, Անտիպատրոս Պոստրացի, Յովհ. Կլիմաքոս եւ Տիտոս Կրետացի։ Դարուս վերջերը "մեծ վարդապետն" Ղեւոնդ գրեց պատմութիւն արշաւանաց Արաբաց ի Հայս եւ պատերազմաց արեւելեան Հռոմայեցւոց, 661էն 788։ Հայ հրատ. Շահնազարեան, Պարիս, 1857 եւ Պետերբ. 1887. գաղղ. Պարիս 1857, ռուս. Պետերբ. 1862։

* Հայ թարգմ. ընդ մամլով յէջմիածին:

Ժ. դարէն յանուանէ ծանօթ են երկու պատմագրութիւնք, Պատմ. Հայոց Յովհ. Կաթղկս.ի, ի սկզբանէ մինչեւ 925 յետ Քի. (Հայ հրատրկ. Երմ. 1843*, Մոսկուա 1853, գաղղ. ոչ լաւ թարգմ. St.-Martin, Պարիս 1841։ — F. Nève, Jean VI Catholicos, L'Arménie chrét. էջ 317—). Եւ Թովմաս Արծրունի, Պատմ. տանն Արծրունեաց մինչեւ ցամն 936։ Թովմայի գործոյն առաջին մասերն են մասնական պատմութիւն Վասպուրականի (Հարաւ-արեւել. Հայաս.) եւ առոր իշխանական ցեղերուն։ Գործոյն վրայ ամբողջացուցիչ մասեր եւ յաւելուածներ յետոյ կցուած են, հրատրկ. Կ.Պոլ. 1852, եւ Պատկանեան, Պետերբ. 1887. գաղղ. M. Brosset I, էջ 1—266։ — Նոյն դարուն էին Խոսրով մեծ, որուն Մեկնութիւնն ժամակարգութեան 1730ին ի Կ.Պոլիս տպագրեցաւ, լատին թարգմ. Vetter, ի Ֆրայբուրգ 1880։ Մեսրոպ երէց, որ գրեց Պատմ. վարուց Ներսեսի մեծի եւ Պատմ. Վրաց եւ Հայոց, տպ. ի Մադրաս 1775ին։ Նշանաւոր հայ մատենագիրն Գր. Նարեկացի, որ խորհմաստ է, լի ոգեւորութեամբ կրօնի, ճշմարտութեան եւ բարոյականութեան, եւ լի քնարական աւիւնով ոչ միայն իւր ոտանաւոր երգերուն մէջ, այլ եւ իւր արձակ բազմաթիւ գրութեանցը մէջ. որ են աղօթք, ճառք եւ ներբողեանք, որոնք նաեւ առանց մեկնութեան դժուարիմաց են, եւ գեղեցիկ մեկնութիւններով ի Հ. Գաբր. Է Աւետիքեան հրատարակուած են ի Վենետ. 1827**։ Աւելի դիւրիմաց է իւր մեկնութիւնն երգոց երգոյն, զոր 26 տարեկան գրած է, տպ. Վենետ. 1789, նաեւ իւր Մատենագրութեանց հրատարակութեան մէջ, Վենետ. 1827, եւ 1840ին վերստին անփոփոխ։ (F. Nève, St. Grégoire de Nareg, L'Arménie chrét. էջ 266—։) Պատմագիրներէն

---

* Բ տպ. 1867:  ** եւ 1801, 1859:

յիշատակութեան արժանի են՝ Ուխտանէս Եպիսկ. (Ուռհայի), որ գրած է պատմութիւն մը յերիս մասունս 1. Պատմութիւն Հայրապետաց եւ Թագաւորաց Հայոց մինչեւ ցԹագաւորն Տրդատ, 2. Պատմ. բաժանման Վրաց ի Հայոց. 3. Յաղագս մկրտութեան ազգին Ծադն (կորուսեալ) կոչեցեալ. Հրատ. Վաղարշապատ 1871. գաղղ. M. Brosset, Deux historiens arméniens, Kiracos de Ganzak, Oukhtanès d'Ourha, Պետերբ. 1870: Մխ. Կաղանկատուացի, որ Աղուանից պատմութիւնը գրեց, մի՛միակ գործն՝ որ կը խօսի Հայոց գրացի այս ազգին վրայ, որ յետոյ Հայոց մէջ ձուլուեցաւ. Հայ. Շահնազարեան, Պարիս 1860, Մոսկուա 1860, ռուս. Պատկանեան, Պետերբուրգ 1861: Հատուածք ինչ առ Brosset-ի, Additions à l'histoire de Géorgie, Պետերբ. 1851:

ԺԱ դարուն է Ստեփ. Ասողիկ Տարօնեցի, որ տիեզերական պատմութիւն մը գրեց մինչեւ ցամն 1004. Հայ. Պարիս 1854, Պետերբ. 1885, ռուս. 1864, գաղղ. Dulaurier, Մաս Ա. Պարիս 1883: Արիստակէս Լաստիվերտացի, որուն պատմութիւնը 989—1071 կը հասնի, եւ բազմաբան ողբերով կը ստորագրէ Սելջուկեանց ձեռօք Հայաստանի կրած զարհուրելի արկածները, տպ. Հայ. Վենետ. 1845, գաղղ. Պարիս 1864*:

Այս դարու քաղաքականօրէն եւ մատենագրութեամբ նշանաւորագոյն անձնաւորութիւններէն մին է Գր. Մագիստրոս, † 1058, որ Կոստանդին Մոնոմախոս կայսրմէ մագիստրոս եւ կուսակալ անուանուեցաւ Միջագետաց. իւր տաղաչափութիւնքն հրատարակուեցան Վենետ. 1830. ժամանակակից պատմութեան համար թանկագին արժէք ունին թղթերն: Քաղուածօրէն թարգմ.

---

* Աշխարհաբար թարգմ. Տէր-Պետրոսեան Մ. Քհ. Ալեքսանդրապոլ 1893:

V. Langlois, Mémoire sur la vie et les écrits du prince Grégoire Magistros: Journal asiat. VI sér. T. XIII, էջ 4—։ Հմմտ. Langlois I, էջ 401—403։

Աւելի բազմաբեղուն էր մատենագրութեան համար ԺԲ. դարը, Ռուբէնեան Հարստութեան ծաղկեալ ժամանակը։ Այս ժամանակի ամենամեծ մատենագիրն է Ներսէս Կլայեցի (Հռոմկլայ = կալա-էրռում) կամ Շնորհալի, Կթղկս. 1166—1173։ Իւր տաղաչափութիւնքն հրատ. Վենետ. 1830. Աղօթքն 36 լեզուի թարգմանուած Վենետ. 1862 եւ 1882, Սիւնհոդոսական ճառն հայ.-լատ. Վենետ. 1830. Նոյնը եւ թղթերը Վենետ. 1848։ (F. Nève, le patriarche Nersès IV dit Schnorhali, L'Arm. chrét. էջ 269—։) Նոյնպէս յիշատակութեան արժանի են Իգնատիոս Վ., որուն մեկնութիւնն յաւետարանիչն Ղուկաս, յօրինեալ յոյն վարդապետաց՝ մանաւանդ Յովհ. Ոսկեբերանի հետեւողութեամբ, տպուած է Կ. Պոլ. 1735 եւ 1824։ Սարգիս Շնորհալի, որ ունի Մեկնութիւն եւթանց թղթոց կաթուղիկէից, Կ. Պոլ. 1743 եւ 1826, եւ ճառեր, տպ. Կ. Պոլ. 1743։ Մատթէոս Ուռհայեցի, որ գրեց պատմութիւն մը 952—1136, լի բուռն ատելութեամբ ընդդէմ Յունաց, եւ սաստիկ համակրութեամբ Խաչակրաց։ Գրիգոր Երէց այս պատմութեան շարունակութիւնը գրեց մինչեւ ցամն 1162. Հայ. հրտ. Երղմ. 1869, գաղղ. Dulaurier, Պարիս 1858 (F. Nève, Chronique de Matthieu d'Edesse, անդ, էջ 341—։) Սամուէլ Անեցի, որ ժամանակագրութիւն մը գրեց ի սկզբանէ մինչեւ 1179, շարունակուեցաւ մինչեւ 1358 (ըստ Brossetի) եւ 1664 (ըստ Տէր-Միքէլեանի). Հայ. հրատ. Տէր-Միքէլեան, Վաղարշապատ 1893. լատ. Զօհրապ, իբրեւ յաւելուած Եւսեբեայ Քրոնիկոնի Միլանի հրատարակութեան 1818. գաղղ. Brosset II. Ներսէս Լամբրոնացի,

Տարօնի Արքեպս. իւր անուանակցին հետ ժամանակին ամենանշանաւոր աստուածաբաններէն է։ Ատենաբանութիւնք հրտրկ. հայ *-իտալ. Հ. Յ. Աւգերեան, Վենետ. 1812, գերմ. Neumann, Լայպցիգ 1834**։ Խորհրդածութիւն սրբազան պատարագի, Վենետ. 1847։ Իւր վարդապետական գրութիւններն ու Թղթերը Գրիգոր Տղայի (Կթղկս. 1173—80) Թղթերուն հետ տպ. Վենետ. 1838։

Միքայէլ Մեծ, Պատրիարք Ասորւոց (1166—99), գրեց ժամանակագրութիւն մը մինչեւ ցԹագաւորել Լեւոն Բ.ի (1198)։ Ասորերէնը կայ այժմ ալ, բայց չէ հրատարակուած։ Հայ Թարգմանութիւնը, կամ ճշդագոյնս՝ ըստ մասին համառօտուած եւ ըստ մասին ընդարձակուած հայ խմբագրութիւնը տպ. Երմ. 1871*** հանդերձ շարունակութեամբ ցամն 1229. գաղղ. Langlois, Վենետ. 1868 հանդերձ շարունակութեամբ ցամն 1246։ Ձեռագրաց մէջ կայ, եւ նաեւ հրատարակուած է Միքայէլի նոյնպէս նոր խմբագրուած ճառն ի քահանայութիւն†։

Մխիթար Գօշ († 1213), որուն 190 առակները 1790ին եւ 1842ին ի Վենետիկ հրատարակուեցան††։

Նաեւ ԺԳ. դարու մէջ կան շատ հեղինակներ, որոնցմէ միայն հետեւեալները կը յիշենք։ Վարդան Մեծ, որ տիեզերական պատմութիւն մը գրեց ցամն 1268. հայ. հրտրկ. Մոսկուա 1861,

---

* Ա. տպ. Կ.Պոլ. 1729:

** Ռուսերէն՝ Էմին, 1865:

*** 1870 եւ 1871 տարբեր խմբագրութիւններ:

† Երմ. 1871:

†† եւ 1854: Մխ. Գօշի Դատաստանագիրք Հայոց, հրտրկ. Վ. Բաստամեանց, Վղրշպտ. 1880: Kohler J. Das Recht der Armenier: Zft. f. vergl. Rechtsw. V. Bd. S. 385—436. Հայ. Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն, Վիեննա, 1890:

Վենետ. 1862, ռուս. Էմին, Մոսկուա 1861։ Նոյնն ունի առակներ, Հայ.-գաղղ. հրտրկ. St.-Martin, Պարիս 1825. Մեկնութիւն Ս. Գրոց, զոր գրեց Հեթում Ա. թագաւորին խնդրանօք*, քաղուածօրէն հրտրկ. գաղղ. E. Prud'homme: Journal Asiat. VI sér. T. IX, S. 147—։ Կիրակոս Գանձակեցի գրեց պատմութիւն մը՝ որ երկու մաս ունի. մին Հայոց հին պատմութեան համառօտութիւնը մինչեւ ցամն 1165, եւ միւսն ժամանակակից պատմութիւն Մղոլաց, Վրաց եւ Աղուանից մինչեւ ցամն 1265. վերջինս հեղինակին հայրենիքն է եւ մանաւորապէս նկատողութեան առնուած. Հայ. հրտրկ. Մոսկուա 1858, Վենետ. 1865, գաղղ. Brosset 1870/71։ Ասոր ժամանակակիցն Մաղաքիա աբեղայ գրեց Մղոլներու արշաւանաց պատմութիւնը մինչեւ ցամն 1272. Հայ. Պետերբ. 1870, ռուս. Պատկանեան 1871, գաղղ. Brosset, Addition à l'histoire de la Géorgie 1851, էջ 438—։ Մխիթարայ Անեցւոյ ժամանակագրութիւնը, զոր Վարդան եւ Ստեփանոս Օրբէլեան գործածած են, կորուած կը համարուի։ Պատկանեան ասոր առաջին մասը 1879ին ի Պետերբ. Սեբէոսի գործոյն իբրեւ յաւելուած հրատարակեց Տփղիսի Արքեպիսկոպոսին անկատար մէկ ձեռագրին վրայէն։ Վահրամ Րաբունի ոտանաւոր գրեց Ռուբենեանց պատմութիւնը մինչեւ ցամն 1280. Հայ. հրտրկ. Մադրաս 1810, Պարիս 1859, անգղ. Neumann, Լոնդոն 1831, գաղղ. Պարիս 1864։

Ստեփանոս Օրբէլեան, Արքեպ. Սիւնեաց 1287—1304 գրեց Պատմութիւն Սիւնեաց, հրտրկ. Պարիս 1859, Մոսկուա 1861, գաղղ. M. Brosset, Histoire de la Siounie par Stéphanos Orbélian, Պետերբ. 1864—66։ Սմբատ սպարապետ, եղբայր Հեթում Ա. թագաւորին (1224—69) գրեց ժա-

* Տպ. ըստ մասին Կ.Պոլ. 1797 եւ 1826:

մանակագրութիւն մը մինչեւ ցամն 1274, զոր ուրիշ մը մինչեւ 1331 շարունակեց, Հրատ. Մոսկուա 1856, Պարիս, 1859: Անկէ քաղուածք մը գաղղ. Langlois, Mémoires de l'acad. de St.-Pétersb. VII sér. T. IV. Մխիթար Այրիվանեցի գրեց ժամանակագրութիւն մը ցամն 1289. Հրատրկ. Մոսկուա 1860*. գաղղ. Brosset, Mémoires de l'acad. de St. Pétersb. VII. sér. T. XIII, Nr. 5, 1869.

Յաջորդ անկման դարերէն կը յիշենք միայն պատմագիրները: Թովմաս Մեծոփեցի ԺԵ դարուն Թեմուր խանի եւ յաջորդացը պատմութիւնը գրեց. Հրատրկ. Շահնազարեան, Պարիս 1860: Այս հրատարակութեան մէջ կը պակսին հետեւեալ յաւելուածներն 1. Վասն միաբանութեան Հայոց եւ Օծման Կաթղիկոսի. յամին 890 (= 1441), 2. Յաղագս Էջմիածնի օրհնութ. 3. Վասն աքսորման Կիրակոս կաթղիկոսի. Հայ. Տփղիս, 1892. (F. Nève, Etude sur Thomas de Medzoph et sur son histoire de l'Arménie au XV. siècle: Journal asiat. 1855, Nr. 13. Նոյնը Les sources arméniens pour l'histoire des Mongols, L'Armén. chrét. էջ 371—. Նոյնը, Exposé des guerres de Tamerlan et de Schah Rokh dans l'Asie occidentale d'après la chronique inédite de Thomas de Medzoph, Բրիւսսէլ 1860:)

Վերջապէս ԺԷ դարուն յիշատակութեան արժանի է Առաքել Դաւրիժեցի, որ 1602—61ի պատմութիւնը գրեց. ասիկայ Շահ Աբբասի ժամանակ Հայոց տառապանաց եւ ի Սպահան փոխադրութեան պատմութեան գլխաւոր աղբիւրն է. Հրատրկ. Ամստերդամ 1669**, գաղղ. Brosset I, էջ 267—: Քանի մը գործեր, որ ԺԷ եւ ԺԸ դա-

---

* Լաւագոյն Պետերբ. 1869 նաեւ ռուս թարգմ. ի Պատկանեանէ:

** Վաղարշապատ 1884, 1896:

րու աշխարհական եւ եկեղեցական պատմութեան համար կարեւոր են, ինչպէս Զաքարիա Սարկաւագի (✝ 1699) Պատմագրութիւնը*, Աբրահամ կաթողիկոսի՝ Կրետացւոյ պատմ. Նադր-Շահին**, եւն, Brosset իւր Collectionին Բ. Հատ. մէջ գաղղ. թարգմանութեամբ հրատարակեց։***

ԺԸ դարով կը սկսի Մխիթարեանց մատենագրական գործունէութիւնը եւ եւրոպական գիտութեանց հետեւողութեամբ գիտնական աշխատութեանց բոլորովին մէկ նոր տեսակը։

## 3. Եկեղեցական պատմութիւն Հայոց։

Հայաստան հռչակուած է՝ իբրեւ քրիստոնէութիւնն առաջին անգամ պետութեան կրօնն ըրած երկիր։ Յետնագոյն զրոյցները քրիստոնէութեան ի Հայս առաջին անգամ քարոզուելուն պատմութիւնը մինչեւ առաքելոց ժամանակը հանած են, եւ կ'աւանդեն որ Հայաստանի մէջ են չորս առաքելոց գերեզմանները, որ են Բարթողիմէոս, Թադէոս Ղեբբէոս, Սիմոն եւ Յուդա։ Աւագագոյնք եւ նշանաւորագոյնք են Բարթողիմէոս եւ Թադէոս, եւ անոր համար ալ յաճախ առանձինն կը յիշուին։ Երբեմն նաեւ զանազանութիւն կ'ընեն երկու Թադէի՝ առաքեալն եւ եօթանասնից մէկը։ Ասոնք այն առաքեալներն են՝ որոնց գործունէութիւնը զրոյցներն յարեւելս սահմանափակած են. յետագոյն աւանդութիւնն ալ նոյները Հայաստանի մէջ ամփոփած է (Lipsius, Apokr. Apostelgesch.

---

* Տպ. Վաղարշապատ, 1870:

** Տպ. Վաղարշապատ 1870:

*** Այս ընդհանուր տեսութենէ դուրս մնացած են ուրիշ շատ հեղինակներ եւ անանուն գործեր, որոնցմէ ոմանք տպագրուած ալ են՝ ինչպէս Գիրք Վաստակոց (Վենետ. 1876) Մխ. Հերացի (Վենետ. 1832) Մեկնութիւն գործոց առաքելոց (Վենետ. 1840) եւն:

II[1] էջ 97։) Այս առաքելոց վրայ եղած զրոյցները, որոնք մեծաւ մասամբ յունական եւ ասորական ծագում ունին, Հայերն՝ յարաբերութեամբ աւելի ուշ առեններ, նոր խմբագրած եւ ընդլայնած են։ Ասոր մասցորդը մենք կը գտնենք Մ. Խորենացւոյ պատմութեան մէջ։ Կարելի է ցուցընել՝ որ Բարթողիմէոսի զրոյցն աւելի հնագոյն ծագում ունի. յոյն վկայութիւններն արդէն զինք Ե դարուն յՈւրբանոպոլիս (Ալբանոպոլիս, Կորբանոպոլիս եւն, հայ. Արեւբանոս քաղաք) ընականապէս բոլորովին անծանօթ քաղաք մը ի Մեծն Հայաստան, մարտիրոսացած կը դնեն։ Սակայն Բարթողիմէոս Թադէի չափ նշանակութիւն չունի Հայոց համար։ Աբգարու՝ Եդեսիոյ թագաւորին զրոյցը, Քրիստոսի հետ թղթակցութիւնը եւ Թադէի առաքումն յԵդեսիա կանուխ ժամանակաւ արդէն ի Հայս ժողովրդական եղած էր. Հայք ասորական զրոյցը պարզապէս սեպհականեցին։ Աբգարու զրուցին հայ խմբագրութիւնը մեզի կը ներկայանայ նախ "Վարդապետութիւն Ադդէի" գործոյն թարգմանութեան մէջ (Լաբուբնիա, դիւանագիր դպիր Եդեսիոյ, Թուղթ Աբգարու, հայ. Վենետ. 1868, Եղմ. 1868, գաղղ. L. Alishan, Վենետ. 1868, եւ Emin առ Langlois II. էջ 313 —*։ Հայ թարգմանութիւնն ասորի բնագրին նաեւ նոր խմբագրութիւնն է, որ "Ադդէի" մահն ու թաղումը կը լռէ, եւ զինք իբրեւ աւետարանիչ դէպ յԱրեւելս ուղեւորած կը դնէ։ Ասով ուզուած է Ադդէի պատմութիւնը միաբանել այն արդէն տիրող զրուցին հետ՝ որ Թադէի քարոզութիւնն ու մարտիրոսութիւնն ի Հայս կատարուած կ'աւանդէր։ Այս թարգմանութեան ժամանակն որոշել դժուարին

1 Տես Հ. Յ. Տաշեան, Վարդապետութիւն Առաքելոց անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադէի: Քննութիւնք եւ բնագիրք: Վիեննա, 1896:

է. սակայն յամենայն դէպս Մ. Խորենացիէն յառաջ է։ Վենետ. 1853ին տպուած "Վկայաբանութիւն Թադէոսի առաքելոյն քարոզութեանն եւ գալստեանն ի Հայս եւ կատարման որ ի Քրիստոս" (Սոփերք, Ը. Վենետ. 1853) կ'աւանդէ՝ որ Թադէոս Սանատրուկ թագաւորին գացած է, որուն Հայաստանի թագաւորութիւնը Եդեսիայէն յայտնապէս տարբեր կը դրուի։ Այս վերջին աւանդութիւնը Լաբուբնայի եւ Մ. Խորենացւոյ մէջ միջին բան մըն է, եւ կը ներկայացընէ նոյն ժամանակի ընտանի աւանդութիւնը։ Ասոր վերջնական խմբագրութիւնն է Մ. Խորենացւոյ քով (Բ, 30 - 36) գտնուածն։ Ասորական զրուցին մինչեւ Խորենացւոյ ժամանակ առած նոր խմբագրութիւնները միայն յաւելուած մ'ունէին Հայոց մասին, այն է՝ զԹադէոս Հայաստան կը տանին եւ հոն մարտիրոսացած կ'աւանդեն. իսկ Մ. Խորենացի ասոր զրոյցն ամբողջովին Հայաստանի կը սեպհականէ։ Աբգար թագաւորը կը հայացուի, Եդեսիա կ'ըլլայ Հայաստանի մայրաքաղաքը. եւ որովհետեւ Աբգար իւր ժողովրդեան հետ քրիստոնէութիւնը կ'ընդունի, Հայաստան առաջին քրիստոնեայ երկիրը կ'ըլլայ։ Սանատրուկ հայ թագաւորը այժմ Աբգարու քեռորդին կ'ըլլայ, եւ անոր կը յաջորդէ նախ իբրեւ Հայոց թագաւոր, եւ յետոյ նաեւ Եդեսիայի։ Այս ամէն նորալուր դէպքերը զուտ հնարուած են։ Տես վերջնական ուսումնասիրութիւնն A. Carrière, La légende d'Abgar dans l'histoire d'Arménie de Moïse de Khoren, Պարիս 1895։ Առանց տարակուսի է որ Թադէի զրոյցն ի Հայս շատ աւելի հին է, քան թէ այս գրաւոր աւանդութիւնը։ Արդէն Փաւստոս Բիւզանդ կը յիշէ Թադէի քարոզութիւնն եւ առաքելասպան Սանատրուկը (Գ, 1 որ մասն սակայն Կարիէր կասկածելի կը գտնէ)։ Նշանակութիւն ունի այն՝ որ կաթողիկոսութեան աթոռը Փաւստոս "Աթոռ

Թադէի„ կ՚անուանէ (Գ. 12, Դ, 4). եւ որովհետեւ Կեսարիա այս զրուցին հետ կապ չունի, — Թէոփիլոս՝ Թադէի աշակերտը եւ Կեսարիոյ առաջին եպիսկոպոսը շատ ետքը հնարուած գիւտ մըն է, — յայտնապէս կ՚երեւայ՝ որ Թադէի հնագոյն զրուցի մը հետ կապ ունենայ։ Արդէն Գր. Լուսաւորչէն յառաջ՝ Ասորիքէն Հայաստանի հարաւային՝ Ասորիքի սահմանակից երկիրները (Ծոփք — Վասպուրական) քրիստոնէութիւնը մուտ գտած էր։ Հնագոյն ժամանակներու մէջ ասորի եպիսկոպոսներու եւ քահանաներու ոչ ցանցառ կը հանդիպինք, եւ սովորաբար ասորերէնը եկեղեցական լեզուն էր։ Աբգարու եւ Թադէի զրոյցներուն ի Հայս մուտքն յայտնապէս մատնացոյց կ՚ընեն՝ որ քրիստոնէութիւնն Եդեսիայէն եկած է Հայոց։ Մարքարտ ZdmG 1896 էջ 651 Մծբինը ցոյց կու տայ իբրեւ երկրորդ կեդրոն Հայաստանի առաքելութեանց։ Թէ յառաջ քան զԳր. Լուսաւորիչ քրիստոնէութիւնն ի Հայս մուտ գտած էր, ստոյգ հետք մը կը ցուցընէ Մերուժան եպիսկոպոս Հայոց, առ որ Դիոնեսիոս Աղեքսանդրացի (248—265) ապաշխարութեան վրայ թուղթ մը գրած է։ (Եւսեբ. Եկեղ. Պատմ. Զ. 46, 2։)

Բոլորովին նոր դար մը կը սկսի Գրիգոր Լուսաւորիչ, Հայաստանի ճշմարիտ առաքեալը։ Ըստ (ոչ շատ հաւատալի) աւանդութեան՝ Անակ, Սուրէն Պահլաւ ազնուական տան մէկ սերունդը, որ Խոսրով թագաւորն սպաննեց († 238), Գրիգորին հայրն է։ Անշուշտ Անակ, ինչպէս նաեւ ուրիշ շատ հայ իշխաններ ու նախարարներ՝ Պարսից Հայաստանը գրաւելու ժամանակ՝ Հռոմէական մասը գաղթած է։ Գրիգոր ի Կեսարիա քրիստոնէական եւ յունական կրթութիւն առաւ, որ Հայաստանի բովանդակ քրիստոնէական զարգացման համար շատ մեծ նշանակութիւն ունեցաւ։ Տրդատայ Հայաստանի վերստին տիրելու եւ բարեկարգելու ժամա-

նաև՝ Գրիգոր՝ Թագաւորին ամենէն եռանդուն գործակիցն է։ Սակայն Թագաւորութեան վերականգնման հետկապուած էր նաև ազգային կրօնի վերականգնումը՝ որ պարսկական հրապաշտութեամբ բարձուած էր։ Գրիգոր իբրև քրիստոնեայ՝ կ'ընդդիմանայ Թագաւորին հրամանաւ կատարուած ազգային շքեղ հանդիսութեան ժամանակ մեծ դիցուհւոյն Անահտայ բագնին վրայ ծաղկեպսակներ նուիրելու, և իր քրիստոնէութիւնը կը դաւանի։ Թագաւորը զայրացած զինք զարհուրելի կերպով կը տանջէ. շատ նշանաւոր է վարուցը մէջ՝ 13 տարի խոր վիրապը մնալը։ Վերջապէս Թագաւորը հրաշքով (այսպէս կը յիշէ նաև Սոզոմենոս Բ. 8) դարձի կու գայ, և այնուհետև կ'ըլլայ եռանդուն քրիստոնեայ։ Երկուքն ալ յատուկ ծրագրաւ և արիութեամբ երկիրը քրիստոնէութեան կը դարձընեն։ Տրդատ և Գրիգոր զօրաց գլուխն անցած կը դիմեն նախ հին մայրաքաղաքն Արտաշատ. այստեղ Անահտայ տաճարը և քաղաքին մօտ Տիւրայ բագինը և քրմաց դպրոցը՝ քրմաց և տաճարին սպասաւորաց յամառ ընդդիմադրութեան յաղթելով գետնայատակ կ'ընեն, և տաճարին ընդարձակ կալուածները և բոլոր սպասաւորները քրիստոնեայ եկեղեցեաց ստացուած կ'ըլլան։ Նոյնպէս կը վարուին արեւմտեան Հայաստանի Դարանաղի, Եկեղեաց և Դերջան գաւառներու նշանաւոր սրբութեանց հետ։ Թագաւորին բաղձանաց համեմատ՝ Գրիգոր հայ նախարարներու շքեղաշուք ընկերակցութեամբ Կեսարիա կ'երթայ, ուր Ղեւոնդիոս հանդիսապէս զինք Հայաստանի Կթղկս. և քահանայապետ կ'օծէ։ Ասով հայ եկեղեցին Կապպադովկեան եկեղեցւոյ հետ իբրև դուստր կապակցութիւն ունեցաւ, ինչպէս Եթովպականը՝ Աղեքսանդրիոյ հետ, և ռուսականը՝ Կ. Պոլսոյ։ Գրիգոր Կապպադովկիայէն հետը բերաւ Յովհ. Մկրտչի (Սուրբ Կարապետ) և Աթենոգե-

սէսի (Աթանագինեայ) նշխարները, որոնք այն ժամանակէն Հայոց ազգային սրբութեանց կարգը մտան։ Գրիգոր ի վերադարձին դէպ ի Հարաւ շեղեցաւ։ Տարօնոյ Աշտիշատ քաղաքին մէջ պետութեան ամենամեծ սրբութիւնը կար, երեքկինն՝ Վահագն, Անահիտ եւ Աստղիկ։ Այս տաճարներն ալ կործանուեցան եւ կործանուեցան, եւ անոնց տեղ կանգնուեցաւ Քրիստոսի փառայեղ եկեղեցին՝ "մեծն եւ առաջին եկեղեցին, մայրն ամենայն եկեղեցեաց Հայոց„։ Եկեղեցւոյս անմիջապէս կից էր կաթողիկոսին պալատը։ Հոս դրուեցաւ նաեւ Հետերնին բերած նշխարաց մէկ մասը՝ ի պաշտպանութիւն ընդդէմ դիւաց, եւ տարին եօթն անգամ ի պատիւ մարտիրոսաց հանդիսապէս աստուածային պաշտօն կը մատուցուէր, որուն բովանդակ աշխարհէն մարդիկ կը դիմէին աշխարհախումբ։ Նաւակատեաց յաջորդեց մկրտութիւն բազմաթիւ մարդկան։ Գրիգոր աւկէ չուեց Այրարատ գաւառը։ Հոս էր Վանատուր Վահեվանեան դից տաճարը, որուն շատ մարդ կը յաճախէր։ Այս ալ եկեղեցւոյ փոխուեցաւ յանուն Ս. Կարապետի եւ Ս. Աթանագինեայ, եւ հիւսիս-արեւելեան յոգնախուռն ժողովուրդը մկրտուեցաւ։

Այս նորակազմ հայ եկեղեցւոյ վրայ երեք բան մտադրութեան արժանի է։ Նախ ազգային նկարագիրը։ Գրիգոր տեղական լեզուաւ կը քարոզէր։ Առաջնուան քրմերու որդիքն ըստ հրամանին Գրիգորի՝ քահանայական դպրոց մը բերուեցան եւ կրթուեցան, որ եւ յետոյ եպիսկոպոսներու վանական դպրանոցն եղաւ։ Անկէ յառաջ եկող աշակերտները հետզհետէ տեղաւորուեցան տասուերկու եպիսկոպոսութեանց մէջ, զոր Գրիգոր հաստատած էր։ Երկրորդ՝ դարձը վերին իշխանութենէ եւ բռնութեամբ կատարուեցաւ։ Ազնուականութիւնն յամենայնի իւր արքային կը հետեւէր։ Ժողովուրդն՝ եւ ի մասնաւորի կանայք, դեռ երկար ատեն հին

կրօնին մէջ մնացին։ Այսր մեծապէս նպաստեց այն պարագայն՝ որ ուսուցիչներն ու քարոզիչները՝ մեծաւ մասամբ երկրին լեզուին անգէտ յոյն եւ ասորի էին։ Եւ վերջապէս երրորդ՝ Հայ եկեղեցւոյն յատկապէս հրէական նկարագիրը։ Կաթողիկոսութիւնը աւելի հրէական Քահանայապետութեան նման էր, քան թէ յատկապէս քրիստոնէական եկեղեցական աստիճանաւորութեան։ Կաթողիկոսութիւնն ու եպիսկոպոսութիւնը որոշեալ ընտանեաց մէջ ժառանգաբար կը մնար։ Անոր համար բարձրաստիճան եկեղեցականք սովորաբար ամուսնացեալ կ՚ըլլային. ամուրի քահանայապետներ իբրեւ ցանցառ զարտուղութիւն՝ առանձինն կը յիշատակուին։ Գրիգորին յաջորդեց իւր կրտսեր որդին Արիստակէս, որ 325ին Նիկիոյ ժողովոյն մէջ էր. իրեն յաջորդեց երէց եղբայրն Վրթանէս, որ իւր անդրանիկ որդին Գրիգոր(իս)ը Վրաց եւ Աղուանից կթղկս. դրաւ։ Կ՚երեւայ թէ այս ժամանակէն սկսած է Վրաց եկեղեցւոյն, որ ըստ ինքեան Հայոցմէ անկախ քրիստոնէութիւն ընդունած է, Հայոց հետ սերտ կապակցութիւնը։ Արդէն չորրորդ կաթողիկոսն՝ Վրթանէսի երկրորդ որդին Յուսիկ, թագաւորին հետ կռիւ ունեցաւ եւ բռնաբար սպանուեցաւ։ Անոր որդիքն աշխարհականացան, եւ անոր յաջորդեցին ոչ-քահանայապետական ցեղէ՝ խաղաղական կաթողիկոսներ։ Բայց Սուրբն Ներսէս, Յուսկան թոռը, շատ նշանաւոր անձնաւորութիւն է. որ ազնուական պաշտօնեայ էր պալատան՝ ինչպէս նաեւ իւր հայրը, եւ թագաւորին եւ ժողովրդեան բուռն թախանձանօքը Կաթողիկոս եղաւ։ Ինքը Կեսարիա կրթուած էր, եւ ջանաց Ս. Բարսղի եկեղեցական գաղափարականները ի Հայս գործադրել։ Աշտիշատայ ժողովոյն մէջ (կը կարծուի՝ 365ին) որոշուեցաւ որ Առաքելական կանոնները պարտաւորիչ են, եւ ամուսնութեան ու պահոց մասին խիստ կանոններ դրուեցան։ Ինքը

կարգի դրաւ նաեւ աղքատաց եւ հիւանդաց հոգացողութեան գործը։ Ամէն կողմ աղքատանոցներ, հիւանդանոցներ եւ հիւրանոցներ կանգնուեցան։ Բայց ամէնէն նշանաւորն է՝ վանական հաստատութեանց սկզբնաւորութիւնը։ Սուրբ ճգնաւորաց ձեռօք, որոնք աշակերտաց գնդեր շուրջը ժողովեցին, հարեւանցի քրիստոնեայ եղած ժողովուրդը հիմնապէս քրիստոնեայ ըրին։ Սակայն յունական օրինակի վրայէն ձեւուած այս տեսակ եկեղեցական կենաց սաստիկ հակառակեցան Թագաւորն եւ ազատանին։ Արշակ Թագաւորը հակառակաթոռ կաթողիկոս մը դրաւ. բայց այն միջոցին՝ երբ Թագաւորը Պարսիկներէն գերի տարուեցաւ եւ Հռոմայեցիք միջամտեցին, Ներսէս բացարձակ ազատ տիրեց՝ փոխանակ անչափահաս Պապ Թագաւորին (367—374)։ Բայց վերջինս, հազիւ թէ չափահաս եղաւ, քահանայից երդուեալ թշնամին դարձաւ։ Մեծամեծ նուիրատուութիւնքն, զոր Տրդատ Թագաւորն ամէն եկեղեցեաց տուած էր, Պապ ըստ մասին ետ առաւ եւ քահանայից թիւը նուազեցուց։ Թագաւորն հիւանդանոցներն ու հիւրանոցները վերցուց եւ կանանց կուսաստանները փակեց։ Ամուսնութեան կանոնական արգելքներն անզօր հրատարակեց, եւ հեթանոսական սովորութիւնները լռելեայն դարձեալ թոյլ տուաւ։ 374էն յառաջ Ներսէս՝ Թագաւորէն թունաւորուեցաւ. որով Ներսէսի երկրորդ տիեզերական ժողովոյ մասնակցիլն ըստ ժամանակագրութեան անկարելի կ'ըլլայ։ Բարսեղ Կեսարացի Հայոց Թագաւորութեան վրայ բանադրանք դրաւ եւ նոր կաթողիկոս մը ձեռնադրելը զլացաւ։ Սակայն Պապ Թագաւորը գտաւ իրեն հպատակ եկեղեցականներ, որոնք հայ եպիսկոպոսներէն ձեռնադրուեցան։ Այս պետութեան հաւատարիմ կաթողիկոսներուն մեծագոյն մասն Աղբիանոս եպիսկոպոսին ցեղէն էին, որ իբրեւ ախոյեան քահանայապետական ցեղին՝ կաթողի-

կոստութիւնը ձեռք բերելու մրցութիւն կ՚ընէր։ Հանդերձ այսու՝ այս կաթողիկոսներէն շատերը նաեւ հակառակ կողմնակցութեանէն իբրեւ բարեպաշտ մարդիկ ճանչցուած են։ Նշանաւոր յառաջադիմութիւն մըն էր թագաւորական կողմնակցութեան հետեւեալ գործը։ Ներսեսի մահուընէն ետեւ Հայաստան Կեսարիոյ հետ ունեցած ամէն եկեղեցական կապերը վերջնականապէս խզեց եւ եկեղեցականօրէն բոլորովին անկախ եղաւ։ Այժմու ինքնագլուխ եկեղեցին ունեցաւ նաեւ իր սեպհական գրոյցը։ Տարօնի հին մայր եկեղեցին իր նշանակութիւնը կորսնցուց. կաթողիկոսներն սկսան Վաղարշապատ մայրաքաղաքը նստիլ։ Կարելի է ցուցընել՝ որ արդէն Ե դարու առաջին կիսուն կայ գրոյց մը, թէ Քրիստոս անձամբ Վաղարշապատի մայր եկեղեցին հիմնած ըլլայ եւ Ս. Գրիգոր Լուսաւորչին տեսլեան մէջ եկեղեցւոյն յատակագիծը նկարած ըլլայ։ Վաղարշապատի տեղական սուրբերն՝ Գայիանէ եւ Հռիփսիմէ, կաթողիկոսութեան հետ սերտ յարաբերութեան մէջ մուծուեցան։ Սակայն այս նոր գրոյցը չկրցաւ իրական պատմական դիպաց յիշատակը բոլորովին ջնջել։

Յամին 390 Սահակ Մեծն Պարթեւ, Ներսեսի որդին, կաթողիկոսական աթոռը բարձրացաւ։ Իւր կաթողիկոսութիւնը Հայոց եկեղեցւոյն փոփոխման էական կէտն է։ Սահակ իւր հօրը պէս վանականութիւնը զարգացուց, սակայն նոր ստացուած եկեղեցական անկախութիւնը՝ հակառակ մինչեւ այն ժամանակ տիրող խիստ եկեղեցական կողմնակցութեան՝ մնաց հաստատուն։ Սահակ ինք զինք խիստ հաւատարիմ ցուցուց առ թագաւորութիւնն՝ որ տկարացած եւ պարսկական աւատապետութեան ենթարկուած էր։ Ամենայն զօրութեամբ, թէեւ ի զուր, ընդդիմացաւ վերջին Արտաշէս թագաւորին գահընկէցութեան, եւ Հայաս-

տանի պարսկական կուսակալութեան փոխուելուն՝ յամին 428։ Բայց ազատանին իւր կամքն յառաջ տարաւ, եւ պարսկական պետութիւնը շատ ճարտարութեամբ յօգուտ գործածեց այս անմիաբանութիւնը՝ նախ զՍահակ գահընկէց ընելու, որ մեծ ազդեցութիւն ունէր, եւ կաթողիկոսութիւնը հետզհետէ երկու Ասորիներու տալու։ Յատուկ նպատակաւ թոյլ տրուեցաւ որ ասորերէնը իբրեւ եկեղեցական լեզու տիրող ըլլայ։ Թէ՛ ինչպէս Սահակ եւ Մեսրոպ ասոր հակառակ կը կենային, եւ հայերէնը գրականութեան վերածելով, յունական գրութիւնները ժրաջան թարգմանելով՝ եկեղեցին մտաւորապէս որչափ կարելի է անձուկ կապեցին յունականին, վերն (էջ 16—) ըսինք։ Այս անձանց ձեռօք Հայոց եկեղեցին Ս. Գրոց ազգային թարգմանութիւնը եւ եկեղեցական պատարագամատոյցն ունեցաւ*։ Յարատեւ կապուելով յունականին՝ եկեղեցւոյ նսեմանալուն եւ կղզիանալուն առջեւն առնուեցաւ։ Ազատանւոյն բաղձանաց համեմատ Ս. Սահակ մահուընէն յառաջ դարձեալ կաթողիկոսական աթոռն ելաւ։

Կիւրղի եւ Նեստորի եկեղեցական վէճն, որ 431ին Եփեսոսի Սիւնհոդոսին ձեռօք վերջացաւ, Հայաստանը միայն անուղղակի շօշափեց։ Liberatus (գլ. Ը.) կ'աւանդէ, որ Նեստորի կուսակիցները Թէոդորոսի Մոպսուեստացւոյ եւ Դիոդորոսի Տարսոնացւոյ գրուածքները ասորերէնի, հայերէնի եւ պարսկերէնի թարգմանեցին եւ ջանացին Հայաստան տարածել, եւ թէ Ակակիոս Մելիտինացի եւ Ռաբուլաս Եդեսացի անոնց դէմ կռուեցան։ Հայ եպիսկոպոսները պատգամաւորութիւն մը ղրկեցին ի Կ. Պոլիս, որուն Պրոկղ 435ին աստուածաբանական ընդարձակ գրութիւն մը՝ Թուղթ Պրոկղի առ

* Տես Հ. Յ. Գաթրճեան, *Սրբազան Պատարագամատոյցք Հայոց, Ուսումնասիրութիւնք եւ բնագիրք*, Վիեննա, 1897։

Հայս (Mansi V. 421—) յանձնեց։ Ժամանակակիցն Կորիւն կ'աւանդէ, որ Սահակայ եւ Մեսրոպայ աշակերտները Հռոմոց մայրաքաղաքէն հետերնին բերին Նիկիոյ եւ Եփեսոսի Սիւնհոդոսաց կանոնները։ Սահակայ եւ Մեսրոպայ ազդարարութիւն եղաւ Եփեսոսի Սիւնհոդոսին թղթովքն (Պրոկղէ Թուղթը), որ զգուշանան այն գաղտնի գործակատարներէն՝ որոնք Պօղոս Սամոսատացւոյն եւ Նեստորի ոգւով գրութիւններ կը տարածէին. այս գործակատարներէն մէկը՝ Թէոդորոս յանուանէ կը յիշուի։ Սահակ եւ Մեսրոպ զանոնք երկրէն արտաքսեցին։ Ասոնց ամենամերձաւոր անձինքներէն միոյն (Կորեան) այս սակաւ տեղեկութիւնը կը ցուցընէ առ նուազն, որ այն ժամանակի Հայերը ժամանակին աստուածաբանական զարգացման բաւական օտար էին եւ չէին հասկընար։

Սահակ վախճանեցաւ 15 Սեպտ. 439։ Իրմով վերջացաւ Գրիգոր Լուսաւորչի այրական ճիւղը։ Ընտանեաց ստացուածներն անցան դստերն որդւոյը՝ Մամիկոնեանց. իսկ կաթողիկոսութիւնը ասկէ սկսեալ յունական եկեղեցւոյն սովորութեան համեմատ՝ վանականներու կը տրուէր։ Սահակայ յաջորդը Յովսէփ ի Շահապիվան ժողով գումարեց, որուն նպատակն էր աշխարհականաց եւ եկեղեցականաց մէջ մուտ գտած այլեւայլ անկարգութիւնները բառնալ։

Քաղկեդոնի ժողովն (451), զոր յետսագոյն Հայերն այնչափ մեծ սաստկութեամբ կ'ատեն եւ կը դատապարտեն, ժամանակակից Հայոց վրայ ամենեւին ազդեցութիւն չունեցաւ։ Ասոր մեկնութիւնը կու տան ժամանակակից դէպքերը։ Յազկերտ Բ. (438—457) բուռն փորձ մ'ըրաւ՝ մազդեզանց կրօնը Հայաստանի տիրող կրօնն ընելու։ Նախարարներն ի սկզբան տեղի տուին. սակայն քիչ ետքը բովանդակ ժողովուրդն ոտք ելաւ, եւ մոգերն ու ատոնց տաճարները բովանդակ Հայաստանի մէջ

ջնջեց։ Վարդան Մամիկոնեան այս շարժման գլուխ եղաւ։ Սակայն Հայերն 451ին չարաչար պարտեցան, եւ ազատանւոյ եւ եկեղեցականաց բազմութիւն մը Պարսկաստան տարուեցաւ, ուր բազմամեայ գերութենէ ետեւ՝ մարտիրոսական մահուամբ վճարեցան։ Ասոնց մէջ էր նաեւ Յովսէփ կաթողիկոս († 454)։ Հալածանքներն այն ատեն դադրեցան, երբ Պերոզ թագաւորին 484ին Հայթաղներէն (Եփթաղեանք) չարաչար պարտուելովը, պարսկական պետութիւնը երկար ժամանակ տկարացաւ։ Վահան Մամիկոնեան՝ Հայազգի՝ մարզպան եղաւ, եւ ժողովուրդը քաղաքական եւ կրօնական խաղաղութիւն գտնելով սկսաւ կազդուրիլ։ Այն ժամանակները տիրող աստուածաբանական վիճաբանութեանց հետ Հայերը մինչեւ այն ատեն քիչ գործ ունեցած էին. վասն զի կ'աւանդուի — թէեւ յետսագոյն աղբերէ մը (Թովմաս Արծրունի, Բ, 2) — թէ Վարդանանց ժամանակի ամենամեծ անձնաւորութիւնը՝ Եղիշէ պատմագիրը, Նեստորականաց գլխաւորին՝ Բարծումային հետ անխտիր յարաբերութեան մէջ էր։ Բայց երբ հանդարտութիւնը տիրեց, Հայերը տիրող յունական աստուածաբանութեան ազդեցութեան կատարելապէս ենթարկուեցան։ Ասոր համեմատ իրենց հաւատոյ կանոն եղաւ Զենոնի Հենոտիկոնը (482), եւ այն՝ խիստ միաբնեայ մեկնութեամբ, որ կը մերժէ Քաղկեդոնի ժողովը։ Արդէն Զենոն իւր թագաւորութեան ժամանակ "...զլուսափիւռ պայծառատարած ճառագայթաւէտ զհաւատս առաքելական ծաղկեցուցանէր յեկեղեցւոջ Աստուծոյ։ Իսկ յետ սորա քաղձանունն Անաստաս կացեալ յաթոռ թագաւորութեանն Հոռոմոց (491—518), նմանապէս կամ թէ եւս առաւել ճշմարտասիրաբար եւ հաճոյակատար Աստուծոյ փարուք հաստատէր զաւանդութիւն բարեպաշտութեան հարցն սրբոց եւ շրջաբերական թղթովք նզովեաց զամենայն հեր-

ձուածողս՝ ընդ ամենեսին եւ զժողովն Քաղկեդոնի նզովէր„: (Ցովհ. Կաթղկս., Երմ. էջ 42, 43*:) Այս տեսութեամբ կը մեկնուի նաեւ այն՝ որ 491ին Բաբգէնի ի Վաղարշապատ գումարած ժողովն, ուր ժողովեցան ոչ միայն հայ եպիսկոպոսներ, այլ եւ աղուան եւ (21) վրացի եպիսկոպոսներ իրենց Գաբրիէլ կաթողիկոսին հետ, հանդիսապէս դատապարտեց Քաղկեդոնի ժողովն, Լեւոնի թուղթը եւ Բարծուման (Ուխտանէս Բ, 50) եւ "ի նմին հիման սրբոյն Գրիգորի հաստատեալ կային: Եւ այսպէս յայսմ ժամանակի մի հաւատ բարեպաշտութեան առ հասարակ հաստատեալ լինէր յաշխարհին Հոռոմոց, Հայոց, Վրաց եւ Աղուանից՝ հաւասար ամենեցունց„: (Ցովհ. Կթղկ. Երմ. էջ 43**:) Բաբգէնի այս ժողովը Հայոց եկեղեցական պատմութեան մէջ դարագլուխ կը կազմէ: Ասկէ սկսեալ Հայք, ինչպէս նաեւ Ասորիք եւ Եգիպտացիք, խիստ միաբնեայ վարդապետութիւնը իբրեւ ուղղափառ ճանչցան: Հմմտ. A. Tér-Mikelian, Die armenische Kirche in ihren Beziehungen zur byzantinischen (Դ—ԺԴ դար), Լայպցիգ 1892***:

Զ դարու եկեղեցական պատմութիւնը շատ մթին է՝ ժամանակակից աղբիւրներ չըլլալուն. եւ որովհետեւ պատմագիրները թուականներու մէջ անմիաբան են, եւ ոչ իսկ կաթողիկոսաց կարգը ստոյգ է: Կաթողիկոսաց կարգին համար կը գործածեմ Չամչեանի թուականները, որոնք սակայն միայն մերձաւոր արժէք մ'ունին. եթէ տեղ տեղ

---

* *Մոսկուա, 1853, էջ 36:* — ** *Անդ, էջ 36:*

*** *Տես Հ. Ց. Գաթրճեան, Իրաւախոհի կեղծիք եւ իրաց ճշմարտութիւնք, Վիեննա, 1873:* Gelzer H., Die Anfänge der arm. Kirche, „Berichte über d. Verh. d. k. Sächs. Gesell.“ Phil.-hist. Cl. 1895 I, II. S. 109—174. *Նոյն հայերէն ի Հ. Ց. Թորոսեան, Վենետ. 1896: Եւ Հ. Ց. Գաթրճեանի՝ "Պատմ. միաբնեայ վարդապետութեան ի Հայս„ անտիպ գործն, որ մօտերս լոյս կը տեսնէ:*

հեռանամ անկէ, այն՝ լաւագոյն աղբիւրներու հետեւելով է։ Կաթողիկոսաց կարգը յօրինուածօրէն կազմելը տակաւին չէ եղած։ Աղբիւրները նաեւ Դըւնոյ երկու ժողովները իրարու կը խառնեն։ Դըւնոյ առաջին ժողովն եղաւ Ներսէս կթղկսի. ժամանակ։ Սամուէլ Անեցի՝ Կաւատ Թագաւորին ժամանակ († 531) 524ին կը դնէ։ Ժողովոյն նշանաւորագոյն հայրապետներն էին Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց եւ Ներշապուհ եպկպս. Տարօնոյ։ Այս ժողովոյս մէջ որոշուեցաւ Յունացմէ վերջնականապէս բաժնուիլ, Ծնունդն ու Մկրտութիւնը միեւնոյն օրը տօնել, եւ "Սուրբ Աստուած"ին "որ խաչեցար վասն մեր" յաւելուածը դնել։ Դըւնոյ երկրորդ ժողովը (7 Արաց = 14 Դեկտ. 552) Հայոց տօնացոյցը կարգաւորեց, եւ հայ թուականի սկիզբը սահմանեց 11 Յուլ. 552։ Եւ որովհետեւ Հայերը միայն 365 օրուան հասարակ տարին ունին, հետեւաբար 1460ին ամբողջ տարի մը ետ մնացած են, եւ ասով նաեւ այս միջոցին ունեցան տարի մը՝ որ քրիստոնէական նահանջ տարւոյ մը Յնր. 1ին կը սկսի եւ Դեկտ. 30ին կը վերջանայ։ Այս տարին է Հայոց 768 թուին = 1320։ Նոյն 1320 տարւոյ Դեկտ. 31ը Հայոց 769 թուին առաջին օրն է, հետեւաբար մինչեւ 1320 քրիստոնէական եւ հայկական թուականներու տարբերութիւնն էր 551 տարի, եւ անկէ ի վեր 550 տարի։

Մինչեւ այս ժամանակներն եկեղեցականութիւնը պարսկական կառավարութեան հետ տանելի խաղաղութեան մէջ էր։ Սակայն 571ին Դուին մայրաքաղաքը հրոյ ատրուշան կանգնելու անմիտ փորձը պատճառ եղաւ՝ որ Յովհաննէս կաթողիկոսին առաջնորդութեամբ՝ մոգերն ու Պարսիկները ջարդուեցան, որոնց հետ նաեւ առաջնորդն Սուրէն մարզպան։ Հայերն առ ժամանակ մի Հոռոմոց յարեցան։ Քահանայիցմէ շատերը եւ կաթողիկոսն Կ. Պոլիս դիմեցին, ուր վերջինս վախճանեցաւ, եւ

Հայաստան Պարսից տակ մնաց։ Մօրիկ (Մաւրիկիոս) կայսրը Խոսրով Պարվէզը վերստին գահ հանելով՝ Պարսկահայաստանի մէկ մեծ մասը դարձեալ իւր իշխանութեան տակ առաւ, եւ հրամայեց Մովսէս կաթողիկոսին, եպիսկոպոսաց եւ աւագանւոյն Կ.Պոլիս ժողովի գալ, որուն նպատակն էր միութիւն։ Սակայն Մովսէս խիստ եւ մերժողական պատասխան տուաւ՝ յունական պատարագի ծէսը արհամարհելով։ Իւր աթոռանիստն Դուինն՝ Պարսից պետութեան տակ էր, եւ այս պետութեան եպիսկոպոսները Մօրկայ ժողովոյն չգացին։ Այն ատեն կայսրն Հայաստանի յունական բաժնին կաթողիկոս դրաւ Յովհաննէսը։ Մովսեսի եւ ասոր յաջորդ Աբրահամու ժամանակ անընդհատ վէճ էր Վրաց հետ։ Ծննդեամբ վրացի Կիւրիոնը, որ տասնուհինգ տարի ի Նիկոպոլիս յունական կրթութիւն առած էր, Մովսէս Դըւնոյ կաթուղիկէին եկեղեցականաց դասուն մէջ ընդունած էր, զոր եւ անձամբ Վրաց կաթողիկոս ձեռնադրեց։ Կիւրիոն քիչ ետքը Քաղկեդոնի ժողովոյն ուղղափառութեան համոզուեցաւ, եւ ասոր ընդդիմացող եպիսկոպոս մը պաշտօնանկ ըրաւ։ Մովսէս եւ յաջորդն Աբրահամ ջանացին բազմաթիւ նամակներով զԿիւրիոն ետ կեցընել. սակայն Կիւրիոն յԵրուսաղէմ ի Ս. Յարութեան տաճարին տիրող հաւատքն ի վկայութիւն կոչեց, ընդունեցաւ չորս սինհոդոսները, որով Հայոցմէ անջատումը կատարեալ եղաւ (594ին?)։ Երբ Խոսրով 604էն ի վեր Հոռոմոց հետ պատերազմի մէջ էր, եւ նաեւ իրմէ առնուած հայկական նահանգները ետ առաւ, Աբրահամ բոլոր հայ եպիսկոպոսներն ստիպեց Քաղկեդոնի ժողովը դատապարտել։ Իւր յաջորդը Կոմիտաս “իւր նախորդներէն աւելի եռանդ ցուցուց Քաղկեդոնի ժողովը դատապարտելու„։ Երբ 614ին Պարսիկներն Երուսաղէմը կործանեցին, Կոմիտաս Երուսաղեմի Պատրիարքական տեղապահին՝ Մո-

դեստոսին մխիթարական թուղթ մը գրեց։ Կոմիտաս 617ին Ս. Սահակայ շինած Ս. Հռիփսիմէի վկայարանը կործանեց եւ աւելի մեծագործ շինեց։ Շինութեան ժամանակ ստուգուեցաւ որ Սրբուհւոյն հասակը գրեթէ ութը թիզ եւ չորս մատ էր։ Նաեւ Վաղարշապատու կաթուղիկէին, որ պատրիարքական աթոռոյն Դուին փոխադրուելէն ետեւ անխնամ էր մնացած, նոր գմբէթ մը շինել տուաւ։

Հայ եկեղեցւոյ մէջ նոր դար մը սկսաւ Հերակղ կայսեր օրով։ Երբ Հերակղ 629ին Խաչն յԵրուսաղէմ վերստին կանգնեց հանդիսութեամբ, Ասորիքի մէջ սկսաւ բանակցիլ միաբնեայց հետ, որոնք ի սկզբան բարեբախտաբար միութեան հետամուտ էին։ Նաեւ Եզր, Հայոց կաթողիկոսն ասոր մասնակցեցաւ։ Թէեւ Եզր ի սկզբան ընդդիմացաւ յունական հողին վրայ միութեան նպատակաւ գումարելի ժողովոյն մասնակցիլ, սակայն երբ տեսաւ որ կը սպառնացուի յունական բաժնին ուրիշ կաթողիկոս մը դնել, տեղի տուաւ։ Կայսրը Եզրի տուաւ “Ձեռնարկ հաւատ Նամակի„, որ զՆեստոր եւ ամէն հերետիկոսները կը դատապարտէր, բայց բնականապէս Քաղկեդոնի ժողովը անկէ դուրս էր թողուած։ Ինչպէս յայտնապէս կ'երեւայ՝ կը բովանդակէր միակամեայց դաւանութիւն մը, որուն հաւան էր կաթողիկոսը։ Անմիջապէս ետքը Եզր յԱսորեստան կայսեր հետ տեսնուեցաւ, անոր հետ Ս. Հաղորդութեան մերձեցաւ, եւ Կողբայ աղահանքը պարգեւ ընդունեցաւ։ Իւր տեղը դառնալով քաղաքական մեծ պատիւներու հասաւ։ Այսչափ ինչ կը պատմէ ժամանակակիցն Սեբէոս. հազիւ յետագոյն պատմիչները կ'աւանդեն՝ թէ նշանաւոր աստուածաբանն Յովհ. Մայրագոմեցի իրեն դէմ ստասկութեամբ կռուած ըլլայ։ Մայրագոմեցի եւ աշակերտն Սարգիս ծայրայեղ յուլիանեան ուղղութեան կը վերաբերէին, որ ի Հայս շատ հետեւող-

ներ ունեցաւ։ Ցամենայն դէպս կաթողիկոսը բուռն արիութեամբ յաղթող եղաւ միշտ։

Միութիւնը մնաց ցորչափ Հերակղ ողջ էր։ Իսլամի ծագումը, թէեւ սաստիկ ճնշեց Հայաստանը, սակայն Հռոմոց եկեղեցական-քաղաքական ակնածութիւնը բարձաւ։ Հայոց եւ Յունաց մէջ ազգային ատելութիւնը սաստկութեամբ բռընկեցաւ։ Հայաստան գտնուող յունական բանակները կը տրտնջէին դառնապէս, որ Հայերն իրենցմէ՝ իբրեւ անհաւատներէ կը խորշին։ Թէեւ Ներսէս Գ., Եզրի յաջորդը; Յունաստան կրթուած էր եւ ի ծածուկ Քաղկեդոնի ժողովոյն (այսինքն միակամեայց վարդապետութեան) մէտ էր, սակայն Հայք բացարձակապէս չէին ուզեր "Ս. Գրիգորի ճշմարիտ վարդապետութիւնը Լեւոնի թղթոյն հետ փոխել։" Կայսեր բաղձանօք՝ Ներսէսի նախագահութեամբ ի Դուին գումարեալ ժողովն վերստին եւ հանդիսապէս դատապարտեց Քաղկեդոնի ժողովը։ Բայց երբ Արաբացւոց եւ Հռոմոց մէջ Հայաստանի համար մղուած պատերազմին ժամանակ՝ Կոստանդին (Կոստանս) կայսրը 652ին անձամբ Դուին գնաց, կիւրակի օրն՝ կաթուղիկէին մէջ, Քաղկեդոնի ժողովն հանդիսապէս ընդունելի հրատարակուեցաւ. կաթողիկոսն եւ եպիսկոպոսունք յոյն քահանայէ մը հաղորդութիւն առին։ Անշուշտ երբ յունական հզօր բանակ մը ներկայ էր, ուրիշ կերպ անկարելի էր։ Կայսրը քննութիւն մ'ընել տուաւ կաթողիկոսին՝ որ կասկածելի վարմունք կը ցուցընէր, եւ կաթողիկոս մեղապարտ գտնուեցաւ. սակայն կայսրն ստիպուած էր շուտով իւր մայրաքաղաքը դառնալ։ Կաթողիկոսն ալ իւր թշնամիներուն ձեռքէն Տայք փախաւ, որուն եպիսկոպոսն էր յառաջագոյն։ Ներսէս կառուցած բազմաթիւ եկեղեցիներուն պատճառաւ "Շինող" կոչուեցաւ։ 689—90ին Յուստինիանոս Բ յաջողեցաւ Սահակ Գ. կաթողիկոսին (677—703) եւ անոր եպիսկոպոս-

ներուն հետ, զոր Կ.Պոլիս կոչած էր, նոր միութիւն մը յառաջ բերել. սակայն ասոնք հազիւ թէ իրենց հայրենիքը դարձան, վերստին մերժեցին։ Եղիա կաթողիկոսի ժամանակ (703—717) Ներսէս Բակուր Աղուանից կաթողիկոսն եւ Աղուանից թագուհին Շպարամ փորձեցին Քաղկեդոնի դաւանութիւնը իրենց երկրին մէջ մուծանել։ Սակայն Հայոց կաթողիկոսը Աբդլմելիք խալիֆին մատնեց զանոնք՝ իբրեւ պետութեան դաւաճան։ Արաբացի զօրաց օգնութեամբ, որոնք երկու գլխաւոր յանցաւորները շղթայակապ Դամասկոս տարին, Աղուանից ուղղափառութիւնն ազատեցաւ։

Յունացմէ աւելի վտանգաւոր եղան տիրող եկեղեցւոյն համար յարատեւ աճող Խորհրդականք (Mystiker)։ Գլխաւորաբար բարեպաշտներու մէջ կային ի վաղուց կրօնական կողմնակցութիւններ, որոնք ըստ մասին խաչի պաշտօնը եւ (Հայոց եկեղեցւոյն մէջ քիչ տարածուած) պատկերներու յարգանքը կը մերժէին, եւ ըստ մասին իբրեւ հետեւող ծայրայեղ Յուլիանականութեան՝ կերպապէս կարծականաց աղանդին (Doketismus) անցած էին։ Գիտնական կաթողիկոսն Յովհաննէս Օձնեցի (717—729) Հայաստանի Պաւղիկեանց դէմ բազմաթիւ ճառեր գրեց։ Թ (կամ Ժ) դարուն կ'ապրէր անուանին Սմբատ, որ Թոնդրակեցւոց աղանդոյն հիմնադիրը կը համարուի։ Թոնդրակեցիք իբրեւ բուն խորհրդականք՝ կը մերժէին ամէն արտաքին պաշտամունք, ձեռնադրութիւն, կիւրակէն տօնել, մկրտութիւն, հաղորդութիւն։ Իրենց հակառակորդաց այն ամբաստանութիւնը՝ թէ Թոնդրակեցիք գաղտնի անբարոյականութիւններ կը կատարէին, անոնց կարգէն է, զոր ուղղափառ քրիստոնեայք, ինչպէս նաեւ մահմետականք այսպիսի կրօնական հերձուածողներու մասին կը զրպարտեն, եւ բնաւ հաւատալի չէ։ Ասոնք նուիրապետութեան հակառակ՝ միայն Ս. Գրոց վրայ հիմնեալ

քրիստոնեայք էին։ Բազմաթիւ եւ իրարմէ շատ տարբեր ճիւղերու բաժնուելով՝ այս աղանդաւորները Հայ եւ յոյն եկեղեցականութեան հալածանքներուն հակառակ՝ դիմացան, եւ անոնց մնացորդը մինչեւ ցայսօր կը գտնուի։ Հմմտ. R. Tér-Mkrttschian, Die Paulikianer, Լայպցիգ, 1893։

Նոր զարգացում մ՚առաւ եկեղեցին Թ եւ Ժ դարերուն Բագրատունեաց Հարստութեան ժամանակ։ Բազմաթիւ վանքեր կանգնուեցան այս ժամանակէն. շատ աստուածաբաններու եւ մեկնակեցաց անուանք կը յիշուին։ Նաեւ միաբնեայք Կողքիսէ եւ Յունաց երկիրներէն եկան եւ Հայ վանքերու մէջ հաստատուեցան։ Բայց կրօնական կենաց այս զարգացման հետ նաեւ ատելութիւնն առ Յոյնս կը սաստկանար։ Արդէն Փոտ Պատրիարքն Զաքարիա կաթողիկոսին հետ (853—876) ի զուր կը թղթակցէր։ Նիկողայոս Միւստիկոսի եւ Պատմագիր Յովհան կթղկսի. (897—925) սերտ բարեկամական թղթակցութիւններն, պարզապէս Հայաստանի անձուկ վիճակը աչքի առջեւ ունենալով, չեն շօշափեր աստուածաբանական խնդիրները։ Ընդհակառակն Անանիա (943—965) "խորախորհուրդ„ մարդկան խորհրդով՝ Յունացմէ մկրտուածները վերստին մկրտել հրամայեց։ Իսկ մեղմագոյն յաջորդն Վահանիկ իբրեւ ի հաւատս կասկածելի՝ գահընկէց եղաւ։ Սեբաստիոյ Մետրոպոլիտն, որ Հայերը դարձի բերելու հետամուտ էր, անյարմար փորձ մը փորձեց երկու բնութեանց խնդիրը նորէն յուզելու, որուն Խաչիկ կթղկս. (971—990) երկայն թղթով մը, ցայսօր պահուած (Ստեփ. Ասողիկ Գ. 21), ընդդիմադրեց, որուն մէջ կտրուկ կերպով Հայոց ուղղափառ վարդապետութիւնը կը ներկայացուի եւ Ս. Հարց բազմաթիւ վկայութիւններով կ՚ապացուցուի։ Որովհետեւ Դուին, երբեմն Պատրիարքաց աթոռանիստը, Արաբաց ձեռքն էր, Պատրիարքունք այլեւայլ տեղեր կը նստէին՝ վան-

քերու մէջ, Աղթամար կղզւոյ վրայ, դարձեալ Արգինա, ուր Խաչիկ շքեղ կաթուղիկէ մը կառուցած էր։ Վերջապէս իւր յաջորդն Սարգիս (992—1019) աթոռն Անի հաստատեց, որ Բագրատունեաց մեծապայծառ մայրաքաղաքն էր, ուր եւ Կատրամիդէ թագուհին Գագկայ (989—1020) ամուսինը, հոյակապ կաթողիկէ մը կառուցած էր։

Ժ. դարուն հայկական անկախ պետութիւնը Բիւզանդիոնի իշխանութեան տակ մնալովը՝ Հայ եկեղեցւոյն համար վատթար ժամանակ մը սկսաւ։ Այս նոր ստացուած գաւառներու մէջ յունական մեծ նուիրապետութիւն մը հաստատուեցաւ, գլուխն՝ Կելզէնէի, Կորզէնէի եւ Տարօնի յոյն մետրապոլիտ մը, եւ 21 եպիսկոպոս։ Բնականապէս ասոնք անհօտ հովիւներ էին։ Յոյնք այն ատեն ալ չգիտցան Հայերու սէրը վաստըկիլ։ Հայերուն քաղկեդոնի ժողովն ընդունել տալու սովորական փորձերն եռանդեամբ շարունակուեցան։ Բարձրաստիճան եկեղեցականաց հասցուած նեղութիւններն աւելի եւս դառնացուցին Հայերը։ Այսպէս Խաչիկ Բ. (1058—1065) երեք տարի ի Կ. Պոլիս արգելուեցաւ։ Ռոմանոս Դիոգենէս կայսրն Սելջուկեանց դէմ արշաւելու ժամանակ երդում ըրաւ Հայոց հաւատքը ջնջելու (Մատթէոս Ուռհայեցի, 103). միայն Ալփ-Ասլանէն պարտուիլն արգելք եղաւ գործադրութեան։ Կաթողիկոսութեան մեծամեծ հարստութիւններն, որ մինչեւ այն ատեն 500 գիւղերու եկամուտն ունէր (անդ էջ 89), անհետացան, որով կաթողիկոսն ատեն մը կարօտութեան մէջ ինկաւ։ Սակայն Վահրամէն՝ Գրիգոր մագիստրոսի որդիէն սկսեալ, որ իբրեւ կաթողիկոս (1065—1105) Գրիգոր կոչուեցաւ, կաթողիկոսութիւնը դարձեալ ժառանգական եղաւ, ինչպէս էր ի սկզբան։ Գրիգորի եօթը յաջորդները մինչեւ 1202, ամէնն ալ հօր կամ մօր կողմանէ անոր ազգականներն էին։ Ասոնք Պահլաւունիք

կոչուեցան, վասն զի իրենց կարծեցեալ ցեղագրութիւնը մինչեւ Գր. Լուսաւորիչ եւ Սուրէն Պահլաւ կը հանէին։ Սակայն առանց հակառակութեան՝ այս վերին աստիճանի կարող ցեղը՝ դժուարին ատեններն Հայ եկեղեցւոյն մեծամեծ ծառայութիւններ մատոյց։ Եպիսկոպոսներու փառասիրութեամբը, եւ Հայ նախարարներու իրենց երկրին համար յատուկ կաթողիկոս անուանելովը՝ հակառակաթոռ կաթողիկոսներ այն ժամանակ ցանցառ չէին. եւ երբեմն չորս կաթողիկոս միասին կը գտնուէին։ Սակայն ժողովուրդը միայն Գրիգորի տնէն կաթողիկոսները օրինաւոր կը ճանչնար։ Գրիգոր Գ. Պահլաւունի (1113—1166) 1147ին Եդեսիոյ Ջոսլին (Joscelin) իշխանէն գնեց Հռոմկլայ բերդը, որ եւ մինչեւ 1293 Հայ կաթողիկոսաց աթոռանիստն եղաւ։ Արեւմտեան եպիսկոպոսներու օրինակին հետեւելով՝ այս ատենները կաթողիկոսունք նաեւ աշխարհական իշխան եղան։

Այն սերտ կապերով, զոր Կիլիկիոյ Հայ թագաւորութիւնն Անտիոքի եւ Պաղեստինի լատին պետութեանց հետ ունէր, նաեւ Հայ եկեղեցին Հռոմայ հետ ի մերձուստ շօշափման մէջ մտաւ։ Հայք ի սկզբան խաչակիրները՝ իբրեւ Յունաց թշնամիները՝ ուրախութեամբ ընդունեցան։ Բայց ուր որ, ինչպէս Եդեսիա, անոնց իշխանութեան տակ մտան, այս տրամադրութիւնը կարճ միջոցի մէջ փոխուեցաւ։ Հոս ալ անմիջապէս սկսան եկեղեցական միութեան բանակցութիւնները։ Քաղաքական պատճառներու համար՝ գլխաւորաբար թագաւորներն երբեմն նաեւ կաթողիկոսունք, այս բանակցութիւնները շատ զիջողութեամբ ընդունեցան, թէեւ ասոնք միշտ անպտուղ անցան։ Լեւոն Բ. կ'ուզէր, "վասն զի իւր մեծութիւնը Հռոմայ Պետրոս եւ Պօղոս առաքելոց պարտական էր", Կեղեստինոս Քահանայապետէն եւ Հենրիկոս Զ կայսրմէ թագաւորական թագ ընդունիլ։

Նշանաւոր Արքեպիսկոպոս մը (Մայնցի Konrad von
Wittelsbach արքեպիսկոպոսը,) 1198ին թագը
բերաւ: Բայց Քահանայապետն ասոր կապած էր
երեք պայման 1. Եկեղեցւոյ գլխաւոր տօները միւս
եկեղեցեաց հետ նոյն օրը տօնել. 2. Գիշեր ցորեկ
յաւիտենական պաշտամունք մուծանել, եւ 3.
Ծննդեան (6 Յունուար) եւ Զատկի հսկման ծո-
մապահք պահել: Թագաւորը՝ աւագանին ու կղերը
հանդարտեցուց ըսելով. "Ասոր վրայ մի՛ վրդովիք,
ես զինք մի անգամ ընդ միշտ արտաքին ձեւացու-
մամբ գոհ կ'ընեմ:" Շքեղ բազմութեան մ'առ-
ջեւ — բաց ի Հայոց կաթողիկոսէն ներկայ էին
Ասորւոց Պատրիարքն եւ Տարսոնի յոյն Մետրա-
պոլիտը — Լեւոն թագաւոր օծուեցաւ: Այս
դէպքը նշանաւոր է միութեան ցանկացող հայ
աւագանւոյն եւ եպիսկոպոսաց բուն տրամա-
դրութեան համար: Կոստանդին կաթողիկոսի շրջա-
բերականը, որ 1246ին արեւելեան Հայոց տեղե-
կութիւն կու տայ Սսոյ ժողովոյն (1243) վրայ, կը
բովանդակէ 23 կանոն եկեղեցականաց եւ աշխար-
հականաց բարեկարգութեան եւ կարգաւորութեան
վրայ: Լատինացիները կը յիշեցընէ միայն 23ը կա-
նոնը, որ Փրանկներու ստգտանաց պատճառաւ՝ կը
սահմանէ արդէն Յովհաննէս Օձնեցիէն յանձնա-
րարուած Վերջին Օծումը: Իննովկենտիոս Դ. Քա-
հանայապետին թելադրութեամբը նոյն կաթողի-
կոսն 1251ին ի Սիս ժողով մը գումարեց՝ Հոգւոյն
Սրբոյ բղխման վրայ խնդիր ընելով: "Յոյնք միայն
ի Հօրէ կ'ըսէին, քանի մ'Ասորիք՝ տարբեր. իսկ
ժողովն Հայոց առ արեւելեան կողմանս ի Մեծ
Հայս գրեց առ գիտնական Վարդապետն Վանա-
կան. վասն զի ասիկայ այն ժամանակ երեւելի էր,
նոյնպէս առ Վարդան Վարդապետ, առ Յովսէփ
եւ առ այլս, որպէս զի անոնց կարծիքը լսէ եւ ըստ
այնմ պատասխանէ Հռոմայեցւոց: Անոնք առա-
քելոց եւ մարգարէից եւ եկեղեցւոյ Ս. Վարդա-

պետաց աստուածաշունչ գրքերը քննեցին, որոնք զեկեղեցին հերետիկոսներէ մաքրած էին: Անոնք ըստ պիտոյից քննեցին (բնագիրները) երկու լեզուաւ ալ* եւ (գտան) ուղիղ Հռոմայեցւոց դաւանութիւնը: Եւ ամենայն աստուածաշունչ գիրք լի են այսպիսի բանիւք„ (Կիրակոս 51, էջ 196): Ցունաց դէմ ունեցած խիստ ատելութիւնն անշուշտ այս լատինամէտ դաւանութեան նպաստամատոյց եղաւ: Սոյ 1307ի "ընդհանրական„ սիւնհոդոսը ջանաց ամէն եկեղեցեաց հետ (Հռոմ եւ չորս յունական պատրիարքութիւնք) միութիւն յառաջ բերել, սակայն յիշատակութեան արժանի արդիւնք մը չունեցաւ: 1293ին Եգիպտացիք Հռոմկլայն կործանեցին, ուրկէ ետեւ կաթողիկոսունք Սիս կը նստէին: Մինչեւ Կիլիկիոյ թագաւորութեան կործանումը միութեան անպտուղ բանակցութիւններն ու փորձերը շարունակուեցան, որոնք միայն նշան են՝ թէ թագաւորք եւ պատրիարքունք արեւմուտքի օգնութեան կարօտ էին:

Սակայն Հայոց՝ թէեւ մէկ փոքր մասը՝ ԺԴ եւ ԺԵ դարուն վերջնականապէս միացաւ Հռոմայ հետ: Նշանաւոր էր մանաւանդ Ցովհ. Քռնեցի Վարդապետին գործունէութիւնը, որ Բարթողիմէոս Դոմինիկեան վանականէն լատիներէն սորվելով՝ անոր հետ միասին Դոմինիկեանց առանձին ճիւղ մը՝ Միաբանողները հիմնեց: Իւր գործունէութիւնը տարածեց մինչեւ Փոքր Ասիա եւ Խրիմ. իւր բարենորոգիչ գործունէութիւնն այնչափ յառաջ գնաց՝ որ եկեղեցական պաշտամանց մէջ լատիներէն լեզուն մուծեց, Հայոց խորհուրդներն անվաւեր հրատարակեց, եւ այս պատճառաւ աշ-

---

* Կիրակոս կ'ըսէ՝ "ըստ պիտոյիցն վարեցեալ երկոքումբք ձայնիւք„, այսինքն՝ ըստ պիտոյից երկու բացատրութիւնն ալ գործածած են, որ է՝ մերթ ի հօրէ, եւ մերթ ի հօրէ եւ յՈրդւոյ:

խարհականները կրկին մկրտեց, իսկ իրեն հետեւող եկեղեցականները կրկին ձեռնադրեց։ Իւր հետեւողներուն մէջ առանձինն նշանաւոր է Ուրմիոյ եպիսկոպոսը Ներսէս Պաղենց, որ միւսներուն պէս Հայոց եկեղեցիէն եւ Հայաստանէն մերժուելով՝ վրէժ առնելու համար մինչեւ Աւինեոն Բենեդիկտոս ԺԲ Քահանայապետին գնաց, եւ Հայոց եկեղեցին զրպարտեց՝ 117 մոլորութիւններ անոր վերագրելով։ Ասոնք ուղարկուեցան Հայոց կաթողիկոսին, եւ Սսոյ 1342ի ժողովոյն մէջ կէտ առ կէտ մերժուեցան եւ այս հիմնական մերժմամբ Կղեմէս Քահանայապետը գոհ եղաւ։ Միաբանողաց կրօնամոլութեամբ գործելն աւելի իրենց նպատակին հակառակ արդիւնք յառաջ բերաւ։ Այն ոչ-անհիմն երկիւղն՝ թէ միաբանութեամբ եկեղեցական պաշտամանց հին հայ ազգային լեզուն գոհ պիտի երթայ, Հայոց մեծամասնութիւնն ետ կեցուց միութեան խորհրդէն։ Հմմտ. Clemens Galanus, Conciliationes ecclesiae Armenae cum Romana, Հռոմ 1650. (Այս գիրքը նաեւ կաթուղիկեայք վերիվերոյ եւ անվստահելի կը նկատեն։) A. Tér-Mikelian, Der kritische Wert römischer Litteratur: ZwTh, 1894 էջ 598—։

Նաեւ Յունաց հետ անընդհատ միութեան բանակցութիւններ եղան։ Մանուէլ Կոմնենոս կայսրն այս նպատակաւ 1165էն ի վեր ընդարձակ թղթակցութիւններ ունեցաւ, որուն Հայոց կողմանէ կը պատասխանէր գլխաւորաբար Ներսէս Դ Շնորհալի (կթղկս. 1166—1173)։ Բազմաթիւ նամակներով եւ դաւանութիւններով Ներսէս՝ որթոդոքս միաբնեայ վարդապետութիւնը որոշ կերպով, թէեւ մեղմ եղանակաւ պաշտպանեց. բացարձակ կը պնդէր մի բնութեան եւ մի կամաց վրայ։ Եւ սակայն քիչ մ'իրարու կրցան մերձենալ։ Հայք տեղի տուին՝ որ Յոյնք "Նեստորական բաժանմանէ" ազատ են, եւ Յոյնք՝ թէ Հայք "Եւ-

տիքական խառնմանէ„ ազատ են։ Ներսեսի յաջորդն Գրիգոր Դ. (1173—1180) շարունակեց բանակցութիւնները. սակայն Հռոմկլայի 1179ի ժողովը մերժեց Յունաց պահանջքները. գլխաւորաբար Մեծ Հայաստանի եպիսկոպոսներն ու վանահայրերը, որոնք Կիլիկիոյ Թագաւորներուն իշխանութենէն դուրս էին, այն պայմանաւ միայն միութիւն թոյլ կու տային, որ Յոյնք Ներսեսի հակաքաղկեդոնական դաւանութեան մօտենան։ Սակայն 1180ին վախճանեցան Մանուէլ եւ միութեան հակամէտ Գրիգոր կթղկս. որով ամենայն ինչ յօդս ցնդեցաւ։ 1196ին դարձեալ "ընդհանրական„ սիւնհոդոս մը գումարուեցաւ ի Տարսոն, որ Լեւոն Բ. Թագաւորին քաղաքական նպատակներուն ծառայեց, բնականապէս առանց իրական միութիւն մը յառաջ բերելու։ Սակայն նշանաւոր է Ներսիսի Լամբրոնացւոյ՝ Տարսոնի եպիսկոպոսին առենաբանութիւնը, այս հաւատոյ բանակցութեանց բոլորովին ամայի Սահարային մէջ ճշմարիտ Ովասիս մը։ Ներսէս պարզ խօսքերով կ'ըսէ Հայոց եւ Յունաց հաւասարապէս, որ ըստ ինքեան երկուքն ալ միեւնոյն հաւատքն ունին, եւ ամբողջ վիճաբանութիւնը անարգ կռիւ մըն է բառերու։ Կը զարմանայ որ քրիստոնեայք միասին կը ճաշեն, սակայն չեն հաղորդիր միասին մարմնոյն Քրիստոսի։ "Այլ սակս (Հոռոմն) թէ հրաժարեմ՝ զի մի պղծիցիմ ի նմանէ որ Հայն է. կամ ես՝ որ Հայս եմ, (հրաժարեմ) ի Հոռոմէն (զի մի պղծիցիմ ի նմանէ որ Հոռոմն է) ... Եւ զի՞նչ է նորա պղծութիւն, կամիս քննեսցուք. ոչ վարք, ոչ գործք, այլ զի զՔրիստոս Աստուած եւ մարդ խոստովանիմք։ Ի մի հաւատ կոչով երկուց կողմանցս, վասն բայից եւ բառից զմիմեանս պիղծս համարիմք։„ Այսպիսի ազատ եւ բարձրաթռիչ ըմբռնում մը երկու կողման հաւատոյ սահմանափակ պահապաններուն անհաս եւ անըմբռնելի էր։

Շատ զարմանալի է որ Հայք մինչդեռ Հռոմայ եւ Բիւզանդիոնի հետ բանակցութիւններ կ՚ընէին, վէճի մէջ էին Ասորւոց հետ, որոնք ի հաւատոյս իրենց հետ ամենասերտ կապ ունէին. անիկայ յայտնի նշան է որ այս աստուածաբանական վէճերն ոչ այնչափ վարդապետական, որչափ ազգային պատճառներէ յառաջ կու գային։ Գրիգոր Գ. կաթղիկոն (1113—1166) ճառի մը մէջ Ասորիները կը յանդիմանէ, որ մէկ մատով երեսնին խաչանիշ կ՚ընեն, եւ այն գինին, մեղրն ու ձէթն, որոնց մէջ մուկ մ՚ինկած ըլլայ, կ՚օրհնեն եւ կը ճաշակեն։ Ասորիք ալ կը պատասխանէին որ Հայերն անխմոր հաց պատարագելով՝ հրէութեան անցած են։ Իրաւամբ Հեթում Ա. Թագաւորն (1224—1269) զայրացած էր, որ Ասորիները՝ որոնք իւր պետութեան մէջ մեծ կալուածներ ունէին, ի խառան Հայոց թող չէին տար եկեղեցւոյ մէջ խորան մը կանգնել։ Այսու հանդերձ՝ արդէն Գրիգոր Դ. Տղայ (1173—1180) իւր գահակալութեանն աւթիւ նորոգեց այն հին սովորութիւնը, եւ Ասորւոց պատրիարքին իւր հաւատոյ դաւանութիւնը ղրկեց. Ասորւոց պատրիարքն ալ Հայոց կաթողիկոսին ղրկեց։ Ասոր վրայ Միքայէլ Մեծ Ասորւոց պատրիարքը (1166—1199) շատ մեծ ուրախութեամբ կը գրէ։

Կաթողիկոսաց բազմանալու ժամանակ՝ անիկայ միայն օրինաւոր կը նկատուէր, որուն քովն էր Գր. Լուսաւորչի Աջը, զոր ճշմարիտ խաչափայտի եւ սուրբ գեղարդեան հետ միւռոնօրհնէքի կը գործածէին։ Ստեփանոս կթղկսի. ժամանակ (1290—94) այս Աջը Մամելուքները Եգիպտոս տարած էին, բայց ասոնք, ինչպէս զրոյցը կ՚աւանդէ, պատժուեցան այնպէս, ինչպէս երբեմն տապանակին փղշտացի յափշտակիչները։ Անոր համար Սիս դարձուցին Աջը, եւ անկէ ի վեր Սիս նստող կաթողիկոսն այս նշխարին զօրութեամբը իբրեւ օրինաւորն եւ ընդ-

հանրականն ճանչցուեցաւ։ Կիլիկիոյ թագաւորութեան կործանմանէն ետեւ Հայ ազգութեան կենդրոնը, որ այժմ ալ եկեղեցականօրէն գոյութիւն ունի, Մեծ Հայք փոխադրուեցաւ։ 1438ին Գրիգոր կաթողիկոսի ժամանակ († 1447) այս սուրբ պահպանակն յանկարծ աներեւոյթ եղաւ, եւ դարձեալ յերեւան ելաւ Էջմիածնի վանքին մէջ, որ թագաւորական եւ կաթողիկոսական հին աթոռանիստ Վաղարշապատ քաղաքն է։ Բնականապէս Գրիգորի Աջը նաեւ Սիս ալ ցոյց կու տան (Langlois, Voyage à Sis : Journ. Asiat. V, Série, T. V էջ 283—)։ 1443ին 700 (?) եպիսկոպոսաց, վարդապետաց եւ քահանայից մեծ ժողովք մը զԿիրակոս հանդիսապէս կաթողիկոս ընտրեց, եւ Էջմիածին է մինչեւ ցայսօր օրինաւոր կաթողիկոսին աթոռանիստը, թէեւ ի Սիս (եւ յԱղթամար) ցայսօր կայ տեղական կաթողիկոս։ 1461ին Տէր Զաքարիա, Աղթամարայ կաթողիկոսը, Ջհան Շահի ձեռօք ընդունեցաւ "կաթողիկոս ամենայն Հայոց„ տարիճանը։ Զաքարիա՝ Լուսաւորչի Աջն, սուրբ խաչվառն՝ որ Գրիգորի, Տրդատայ եւ Ս. Հռիփսիմէի հրաշագեղ կուսին ոսկեման պատկերները կը կրէր, ինչպէս նաեւ սուրբ ուրարն՝ մեծաւ հանդիսութեամբ — նաեւ մահմետականք մեծարանք ցուցին Աջոյն — Աղթամար փոխադրեց, ուր ընդհանրական կաթողիկոսութեան նշանակն՝ Ս. Յակոբ Մծբնայ հայրապետի պահոց ուրբաթ օրն՝ 11 Դեկտ. 1461 հանդիսապէս տեղաւորեցին։ Սակայն Արթանէս եպիսկոպոսին ճարտարութեամբը՝ Էջմիածնի Տէր Սարգիս եւ Տէր Յովհաննէս կաթողիկոսներու ժամանակ, 1475, այս սրբութիւնք դարձեալ Էջմիածին փոխադրուեցան։

Յետսագոյն ժամանակի հայ եկեղեցւոյն պատմութիւնը տխուր է ինչպէս Յունացը։ Ինչպէս որ ի Կ. Պոլիս Բ. Դրան բարձրագոյն իշխանաւորք յունական պատրիարքութիւնն աւելի

վճարողին աճուրդով կու տային, եւ այս բարձրաստիճան եկեղեցականաց բովանդակ գործունէութիւնն էր խարդախութիւններ ընել եւ մուրալու երթալ, նոյնպէս էր նաեւ Հայաստան։ Սոֆիներն (Sofi) բոլորովին ազատ կը տրամադրէին Ս. Գրիգորի աթոռոյն վրայ. սովորաբար երկու եւ աւելի կաթողիկոսներ կ'ըլլային; մեծաւ մասամբ անգրագէտ եւ ըստ մասին նաեւ բարոյապէս անարժան անձինքներ։ Արիւնարբուն Շահ Աբբաս Ա., որ հայ ազգին ընտրելագոյն մասը անպատմելի նեղութիւններով Սպահան (Նոր Ջուղա) փոխադրեց, նաեւ կենդրոնական սրբութիւնքն Պարսկաստան տարաւ։ Իրեն ըսած էին, որ "Ս. Էջմիածնի լուսաճաճանչ աթոռն է Գրիգոր Լուսաւորչի Աջը, անով կ'օրհնուի սուրբ մեռոնը, եւ անկէ կը բաժնուի ամէն տեղ, ուր հայ կը գտնուի. անոր համար հայ ժողովուրդը Էջմիածնի սուրբ աթոռոյն եւ այնտեղ նստող կաթողիկոսին կը հնազանդի։„ Սրբութիւնքն Պարսկաստան փոխադրուելով՝ յաչս Հայոց նաեւ կաթողիկոսական սուրբ աթոռոյն փառքը Պարսից թագաւորին մայրաքաղաքը փոխադրուեցաւ։ Եւ այսպէս 1614ին Մելքիսեթ կաթողիկոսն, Լուսաւորչի Աջը եւ Էջմիածնի եկեղեցական այլ գանձերն փոխադրուեցան Սպահան։ Սակայն 1638ին արժանաւոր կաթողիկոսն Տէր Փիլիպպոս յաջողեցաւ թոյլտուութիւն առնուլ Սէֆի Շահէն սուրբ նշխարները Էջմիածին փոխադրելու, ուր եւ կը մնան ցայսօր։

Պարսկական հալածանքներու ժամանակ Հայերը մինչեւ արեւմուտք հեռաւոր վայրեր ցրուեցան։ Գլխաւորաբար Լեհաստան վաճառականներու հարուստ գաղթականութիւն կար։ Լեմբերգ վախճանեցաւ 1625ին Մելքիսեթ կաթողիկոսն, որ Շահ Աբբասի անտանելի նեղութիւններէն փախած եկած էր, եւ հոն եպիսկոպոսութիւն մը հաստատած էր՝ զՆիկողայոս եպիսկոպոս ձեռնադրելով։

Ասիկայ Յիսուսեանց թելադրութեամբ կաթողիկէ միութեան յարեցաւ, որ պատճառ եղաւ հասարակութեան մէջ երկարատեւ երկպառակութեան. մանաւանդ որ եպիսկոպոսն հասարակութեան ստացուածքն աներկիւղ կը վատնէր։ 1652ին Փիլիպպոս կաթողիկոսն հաւանեցաւ համաձայնութեան մը, որով միայն Նիկողայոսին թոյլ կը տրուէր պատարագի մէջ Քահանայապետը յիշել, իսկ միւս քահանայք եւ իր յաջորդները պիտի չյիշէին։ Սակայն եպիսկոպոսին թեմը քիչ մ'ատեն կաղալէն ետեւ՝ մնաց միութեան մէջ։

Նադըր Շահին թագաւորութիւնն Հայոց համար համեմատաբար նպաստաւոր էր։ Աբրահամ Կրետացի կաթողիկոսը (1734—1737) Շահէն ամէն կերպով մեծարանք եւ պարգեւներ ընդունեցաւ։

ԺԸ դարով կը սկսի՝ բարբարոսութեան խաւարը, որ ԺԴ դարէն ի վեր Հայաստանի վրայ նստած էր, փարատիլ, թէեւ շատ դանդաղ։ Էջմիածնէն եկեղեցականներ ղրկուեցան հայերէն տպարաններ հաստատելու։ Այսպէս տպարան հաստատուեցաւ 1616ին Լեմբերգ, 1640ին Նոր Ջուղա եւ Լիվոռնոյ, 1660ին Ամստերդամ, որ 1672ին Մարսէյլ փոխադրուեցաւ, 1677ին Կ. Պոլիս, եւն։ Մինչեւ այն ատեն Հայերը Ասորիներէն կամ Խպտիներէն չնչին աստիճան մ'աւելի կրթեալ էին։ Հայերն եւրոպական քաղաքակրթութեան բերելու անմոռանալի արդիւնքն Մխիթարայ եւ իր կրօնին՝ Մխիթարեանց գործն է, որոնք 1717էն ի վեր Վենետիկի Ս. Ղազար կղզւոյն վրայ հաստատուած, բաց ի կաթողիկեայ Հայոց մէջ առաքելութիւն ընելէն, գլխաւորաբար իրենց մատենագրական գործունէութեամբը եւ իրենց մեծագործ տպարանովը՝ արդի հայերէն մատենագրութեան զարգացման եւ իրենց ազգին մէջ գիտութիւններու յառաջանալուն վրայ շատ նշանաւոր ազդեցութիւն ունեցան։ Մխիթարեանց մէկ մասը 1773ին Տրիեստ քաղաքը վանք

մը հաստատեց, որ 1810ին Վիեննա փոխադրուեցաւ։ Իրենց նոյնպէս շատ հանրածանօթ տպարանը 1811ին Վիեննա փոխադրուեցաւ։

Յամին 1828 Պարսից Հայաստանը Էջմիածին Մայր Աթոռոյն հետ Ռուսաց իշխանութեան տակ մտաւ, որով Հայոց եկեղեցւոյն համար նոր ժամանակ մը սկսաւ։

Հայոց ազգային եկեղեցին, որուն անդամները սովորաբար, բայց հակառակ ազգին յատուկ գործածութեան, "Գրիգորեան" կը կոչուին, իւր գլուխը կը ճանչնայ Էջմիածին նստող "Ծայրագոյն Պատրիարք եւ կաթողիկոսն ամենայն Հայոց"։ Ասիկայ կ'ընտրուի ամէն հայ վիճակներէն ղրկուած պատգամաւորներու ազգային ժողովէն։ Սակայն Ռուսական կառավարութեան պիտի ներկայացընեն երկու ընտրեալ՝ հաստատութիւն առնլու համար, որմէ մէկը կաթողիկոս, միւսը տեղապահ կ'անուանուի։ Վերջընթեր ընտրութեան ժամանակ՝ Ռուսական կառավարութիւնը առաջին անգամ հրաժարեալ տեղապահն Տէր Մակար († 1893) կաթողիկոս անուանեց։ Այժմ կաթողիկոս է Տէր Մկրտիչ Ա. Խրիմեան, երբեմն Պատրիարք Կ. Պոլսոյ։ Կաթողիկոսին առընթերակաց է Կաթողիկոսական Սինհոդը, որ 7 (յառաջ 12 եպիսկոպոս) անդամէ կը բաղկանայ. արտաքին գործերը կը հոգայ "Վանական տնտեսութիւնն Մայր Աթոռոյ" (1 գահերէց, 3 անդամ)։ Ասոնցմէ զատ Էջմիածին կը գտնուին 23 անպաշտօն անդամներ։ Մայր Աթոռն ունի աստուածաբանական-փիլիսոփայական ճեմարան։ Էջմիածնի վանքին մատենադարանին մէկ ցուցակն հրատարակեց Brosset, Catalogue de la Bibliothèque d'Etschmiadzin, Պետերբ. 1840 (անկատար)։* Իսկ Սոյս կաթողիկոսական մատենադարա-

* Կարենեանց Յ., Մայր ցուցակ ձեռագիր մատենից գրադարանի սրբոյ Աթոռոյն Էջմիածնի, Թիֆլիզ, 1863:

նին (նորագոյն եւ անարժէք) ձեռագիրներու ցուցակը հրատարակած է Langlois, Journal Asiatique, V. Sér. T. V, էջ 290։ — կաթողիկոսին անմիջնորդական իշխանութեան տակ է Ռուսահայաստանի հայնուիրապետութիւնը, որուն թիւը Ռուսք նուազեցուցած են, եւ Պարսկահայաստանի նուիրապետութիւնը։ Աղուանից կաթողիկոսութիւնը, որ իբրեւ պատուոյ աստիճան մինչեւ մեր դարը տակաւին ի գոյութեան էր, այժմ բարձուած է. նոյնպէս 1837ի Էջմիածնի մէկ ժողովոյն որոշմամբը՝ Սիւնեաց մետրապոլտութիւնը ջնջուեցաւ, որ աստիճանն ունեցողը Տաթեւու վանքը կը նստէր եւ ԺԳ դարէնի վեր “Պրոտոփրոնտէս„ (Նախամիտ = πρωτόϑρονος, Նախաթոռ) տիտղոսն ունէր։ Ռուսահայաստանի նուիրապետութիւնն այժմ կազմուած է հետեւեալ թեմերէն. 1. Երեւան, օգնական ունենալով Նախիջեւանի, Աղեքսանդրապոլի, Կարսի եւ Տաթեւու առաջնորդները։ 2. Բեսարաբիա, որ ունի 1 օգնական առաջնորդ։ 3. Աստրախան, 1 օգնական առաջնորդ։ 4. Տփղիս, որ ունի Ախալցխա, Գանձակ (Եղիսաբեթոպոլ) եւ Գոռի օգնական առաջնորդները։ 5. Շուշի, 1 օգնկն. առաջն. եւ 6. Շամախի։ Կաթողիկոսին վիճակին կը վերաբերին նաեւ Պարսկահայաստանի, Ատրպատականի եւ Սպահանի առաջնորդութիւններն։ (Կաթողիկոսաց ցանկը տես առ Ստեփ. Օրբէլեան, Brosset I; էջ 274 — մինչեւ Գրիգոր Է. 1294—1306։ Առաքել Դաւրիժեցի, Brosset I, էջ 476 — մինչեւ Տէր Յակոբ 1656—1680։ St.-Martin, Mémoires I. էջ 436 — մինչեւ Ղուկաս 1780)։ Ընդհանուր կաթողիկոսէն զատ կան ուրիշ երկու մասնական կաթողիկոսներ ալ, որոնք սակայն այս օրս միայն գաւառական մետրապոլիտ են “կաթողիկոս„ տիտղոսով։ Իրենց մի միակ առաւելութիւնն այն է՝ որ իրենց թեմին համար Ս. Միւռոնը կ'օրհնեն։ Սսոյ կաթողիկոսութիւնը Մայր Աթոռոյն յԷջմիածին փոխադրուելէն

եալքն ալ՝ նոյն կերպով կը շարունակուի (Սսոյ կաթողիկոսաց ցանկը St.-Martin, Mém. I, էջ 446 —)։ Սսոյ այժմու կաթողիկոսը կը կրէ "Կաթողիկոս տանն Կիլիկիոյ„ տիտղոսը։ Ասոր իշխանութեան տակ կան 16 եպիսկոպոսունք ի Կիլիկիա եւ յԱսորիս, Ատանա, Հալէպ, Այնթապ, Մարաշ, Զէյթուն, Անտիոք, Տէրէնտէ, Մալաթիա եւն, ասոնցմէ ոմանք միայն անուանական առաջնորդ են։ Աղթամար կղզւոյ վրայ մասնական կաթողիկոսութիւնն տանն Աղթամարայ 1113էն ի վեր անընդհատ յաջորդութեամբ կը շարունակուի։ Իւր թեմն է միայն Աղթամար կղզին եւ Վանայ լիճը։

Այս մասնական կաթողիկոսութենէ շատ աւելի նշանաւոր է երկրորդ կարգի ամենաբարձր աստիճանը՝ Պատրիարքութիւնը։ Այժմ կան երկու Պատրիարքունք՝ Կ. Պոլսոյն եւ Երուսաղեմին։ Ասոնք իրենց գոյութեան սկիզբը պարտական են իշխաններու քաղաքագիտութեան, որոնք բազմաթիւ հայ հպատակներ ունենալով՝ իրենց պետութեան սահմանին մէջ նստող վերին կարգաւոր մը կ'ուզեն։ Եգիպտոսի Մամէլուք Սուլթանները, որ նաեւ Պաղեստինի եւ Ասորիքի տիրած էին, 1311ին Երուսաղեմի պատրիարքութիւնը հաստատեցին։ Ասոր Պատրիարքական իշխանութիւնը կը տարածուի այժմ Պաղեստինի եւ Ասորւոց մէկ մասին վրայ։ Պատրիարքը կը նստի Երուսաղեմի Ս. Յակովբայ վանքը, եւ իրեն ստորակարգեալ են Ռամլէի, Եաֆայի, Բէյրութի, Դամասկոսի եւ Լատակիայի տիտղոսական եպիսկոպոսները։

Հայերն ունին ի Կ. Պոլիս նոյնպէս Պատրիարք մը։ Զայս հաստատած է Մուհամմէտ Ա. Ֆաթիհ 1461ին, եւ Բրուսայի Յովակիմ եպիսկոպոսը առաջին Պատրիարք դրած է։ Պատրիարքական փոխանորդ է Ծայրագոյն վարդապետ մը։ Պատրիարքին իշխանութիւնը սահմանափակուած է Ազգային ընդհանուր ժողովով եւ Ազգային կենդրոնական

վարչութեամբ։ Ազգային ընդհանուր ժողովը կը կազմեն Ա. Մայր դիւան. 1. Ատենապետ, 2. Փոխ-Ատենապետ, 3. Ատենադպիր, 4. Փոխ-Ատենադպիր։ Բ. Եկեղեցական ժողով, 3 Արքեպիսկոպոսունք, 4 Եպիսկոպոսունք, 6 Ծայրագոյն վարդապետք, 4 Աւագ քահանայք եւ 3 Քահանայք։ Գ. Գաւառական երեսփոխանաց ժողով, 96 աշխարհական երեսփոխանք։ Ժողովքներն առանձին առանձին կը գումարուին. իսկ բուն կառավարութիւնը կը հոգայ՝ բացի Պատրիարքէն՝ Ազգային կենդրոնական վարչութիւնը, որ հետեւեալ մասերէ բաղկացած է. 1. Կրօնական ժողով, 14 անդամ, ամէնն ալ եկեղեցական։ 2. Քաղաքական ժողով, 14 անդամ, ամէնն ալ աշխարհական։ 3. Դատաստանական խորհուրդ, 8 անդամ, կէսն եկեղեցական կէսն աշխարհական։ 4. Ուսումնական խորհուրդ, 7 աշխարհական. 5. Տնտեսական խորհուրդ, 7 աշխարհական. 6. Կտակաց հոգաբարձութիւն, 3 եկեղեցական, 4 աշխարհական. 7. Հիւանդանոցի հոգաբարձութիւն, 3 աշխարհական։

Պատրիարքին մասնաւոր պաշտօնեայքն են՝ Կրօնական տեսուչ, Կրթական տեսուչ, Տնտեսական տեսուչ եւ երկու Գործակատար։ Պատրիարքն ունի հետեւեալ Դիւանատներն՝ 1. Կրօնական դիւանատուն, 2. Քաղաքական դիւանատուն, 3. Տաճկական դիւանատուն, 4. Փոխանորդարանի դիւանատուն, 5. Մասնաւոր դիւանատուն, 6. Պատրիարքարանի ելեւմտից դիւանատուն, 7. Անցագրատան դիւանատուն։ Այս ամէն դիւանատները 2—3 պաշտօնեայ կ՚ունենան։

Պատրիարքին ենթարկեալ է նաեւ Արմաշու Պատրիարքական Դպրեվանքը։ Ասոր վերին հոգաբարձութիւնը կազմուած է 9 անդամներէ. գահերէցն է Պատրիարքը. ասոր տեղապահն է վանահայրն՝ Մաղաքիա եպս. Օրմանեան*. վանատունր

* Այժմ Պատրիարք Կ. Պոլսոյ։

կը կազմեն 6 Վարդապետք։ Գիտութեան հետեւեալ ճիւղերուն համար ուսուցիչներ դրուած են, այն է՝ կրօն, հայերէն լեզու՝ մատենագրութիւն եւ պատմութիւն, տաճկերէն, գաղղիերէն, ընդհանուր պատմութիւն, երգեցողութիւն, ուսողութիւն եւ բնագիտութիւն։ 1892ին Դպրեվանքը կային 36 աշակերտ, 2 վարդապետացու եւ 16 ծառայ։

Այժմ Կ. Պոլսոյ Պատրիարքին անմիջնորդական իշխանութեան տակ են հետեւեալ եպիսկոպոսութիւնները՝ Եւրոպական Տաճկաստան՝ Ադրիանուպոլիս եւ Ռոդոստոյ. ի Փոքր Ասիա՝ Ամասիա եւ Մարսուան, Անկիւրիա, Եւդոկիա, Տրապիզոն եւ Ճանիկ, Նիկոպոլիս, Սեբաստիա, Կեսարիա, Զմիւռնիա, Բրուսա, Նիկոմեդիա. ի Հայս եւ մերձաւոր գաւառները՝ Բաբերդ, Բասեն, Կարին, Երզնկա, Կամախ, Գերջան, Ակն, Արաբկիր, Չմշկածագ, Խարբերդ Բալու, Բաղէշ (Բիթլիս,) Մուշ, Ախլաթ, Վան, Լիմ, Արղն, Բայազիտ եւ Աղաշկերտ, եւ քանի մ'ուրիշ տեղեր։ Ի Միջագետս՝ Բիրէճիք, Եդեսիա, Տիգրանակերտ, Սղերդ եւ Բաղդատ։ Եգիպտոս՝ Կահիրէ։ Այս աթոռոց մեծագոյն մասը Վարդապետներ կը կառավարեն։ Ինչպէս Յունաց՝ նոյնպէս Հայոց քով բարձրաստիճան եկեղեցականներն վանական կղերէն կ'առնուին, գլխաւորաբար անոնցմէ՝ որ Վարդապետի աստիճան ունին, այն է քարոզիչ եւ ուսուցիչ. ("Վարդապետ" բառը կ'երեւայ թէ հեթանոսական ծագում ունի)։ Թէ Ռուսական, թէ Տաճկական եւ թէ Պարսկական Հայաստանի մէջ վանքեր արտաքոյ կարգի շատ կան, որոնցմէ ոմանք ցայսօր ալ շատ կալուածներ ունին։ Բայց ամէն տեղ միաբանները գրեթէ միայն մէկ քանի բնակիչներ են. եւ պէտք է ըսել՝ որ չմիացեալ Հայոց քով վանականութիւնը շատ անկած վիճակի մէջ է։ Նոր ոգւով կրթեալ Հայերը վանականութեան անունը լսել չեն ուզեր։

Հռոմէական եկեղեցւոյ հետ միացեալ Հայերը Խաչակրաց ժամանակէն եւ Միաբանողներէն սկսեալ ցայսօր կան, եւ կամաց կամաց՝ բայց ոչ շատ՝ կ'աճին։ Թէ Էջմիածնի եւ թէ Սսոյ բազմաթիւ կաթողիկոսներ Հռոմայ հետ յարաբերութեան մէջ մտած են։ Իրենց հպատակութեան յայտարարութիւններուն վաւերականութիւնը մեծաւ մասամբ տարակուսական է, եւ ապահովապէս՝ անկեղծութիւնը տարակուսական է*։ Յամենայն դէպս թէ հոգեւորականութիւնը եւ թէ ժողովուրդը հակահռոմէական էին, եւ այնպէս ալ մնացին։ Յամին 1562 Էջմիածնի Միքայէլ կաթողիկոսը Հռոմ Պիոս Դ Քահանայապետին պատգամաւոր ղրկեց զԱբգար, որ կ'ըսուի թէ արքայական անէ ըլլայ։ Աբգար ի Հռոմ հայերէն տպարան մը հաստատեց, ուր 1567ին նախ Սաղմոս եւ վերջէն ուրիշ գործեր տպագրուեցան։ Պիոս Ե այս Հայոց պարգեւեց Ս. Մարիամ Եգիպտացւոյ եկեղեցին, վանատունը եւ գրակից շէնքերը. եւ Գրիգոր ԺԳ կ'ուզէր Հայոց Վարժարան մը հաստատել. բայց մահն խափանեց։ Ուրբանոս Ը.էն սկսեալ հայ կղերացուներն Հաւատոյ տարածման (Propaganda) վարժարանը գրուեցան։ Նաեւ ԺԷ դարուն բազմաթիւ կաթողիկոսներ հպատակութեան թուղթ գրեցին Հռոմ. սակայն այս ամենայն հետեւութիւն մը չունեցաւ։ Բայց միեւնոյն ժամանակ, երբ Մխիթարեան Միաբանութեան հիմնարկութեամբը միացեալ Հայոց հասարակութիւնն այնպէս սաստիկ աճում ունեցաւ, նաեւ Հռոմայ հետ իրապէս միութեան մէջ եղող կաթողիկոսութիւն մը հաստատուեցաւ։ Աբրահամ, 1710էն ի վեր կաթողիկեայ-հայ եպիսկոպոսն Բերիոյ, Լիբանանու վրայ Քերեմի վանքն հաս-

---

* *Ընդհանուր ըսուած խօսք մը: Կարելի է տարակուսիլ՝ բայց պէտք է նաեւ տարակուսելու պատճառներն ըսել:*

տաւեց՝ Ս. Անտոնի կանոններով*։ 1740ին իրեններէն Սսոյ Պատրիարքը ընտրուեցաւ. (Հռոմ պաշտօնապէս միայն «Պատրիարք» տիտղոսը կը գործածէ. իսկ չմիացեալ Հայերն կաթողիկոսին երկրորդաբար նաեւ «Պատրիարք» անունը կու տան, եւ այս անունը կը գործածեն նաեւ երկրորդ աստիճանի բարձրաստիճան եկեղեցականին,) եւ 1742ին Բենեդիկտոս ԺԴ Քահանայապետէն Պալլիում ընդունեցաւ։ Եւ որովհետեւ Աբրահամ Կիլիկիոյ մէջ Սսոյ չմիացեալ կաթողիկոսին հետ միասին կենալ չէր կրնար, աթոռը Լիբանան փոխադրեց. եւ հոն 1749ին վախճանեցաւ։ Ինքն եւ իւր յաջորդները իրենց անուան քով Գլխաւոր Առաքելոյն անունն ալ առին։ Յակոբ Պետրոս Բ 1749—1753 իւր բնակարանն հաստատեց Լիբանանու Զմմառի Մարեմայ վանքը, զոր իւր նախորդն սկսած էր շինել։ 1740—1866 ութ Պատրիարք Սսոյ տիտղոսական աթոռը նստան. բայց իրենց աթոռանիստը Զմմառ էր. Կիլիկիա եւ Ասորիք իրենց իշխանութեան տակ էին։ Իսկ Կ. Պոլսոյ եւ Փոքր Ասիոյ միացեալ Հայերը Կ. Պոլիս նստող Առաքելական Նուիրակի մ'իշխանութեան տակ էին. բայց քաղաքական իրաց մէջ Կ. Պոլսոյ չմիացեալ Հայոց Պատրիարքին ստորակարգեալ էին։ Ասիկայ ամէն տեսակ նեղութեանց պատճառ եղաւ, եւ 1827—1828ին Կ. Պոլսոյ մէջ կաթուղիկեայ Հայոց դէմ սաստիկ հալածանք մը յառաջ բերաւ։ Գաղղիական դեսպանին միջամտութեամբը՝ Սուլթան Մահմուտ** 1831

* Անտոնեան Միաբանութիւնն հաստատուեցաւ 1704ին Յակոբ քահանայ Յովսէփեանի ձեռօք: Իսկ Աբրահամ Եպիսկոպոսն Բերիոյ (Հալէպ) 1716ին կաթողիկեայ հաւատքին համար Կ.Պոլսոյ Յովհ. Կոլոտ Պատրիարքին ձեռօք Ռուադ կղզին աքսորուած էր, 1720ին ազատեցաւ եւ եկաւ Լիբանան Անտոնեանց քով եւ անկէ կը կառավարէր թեմը:

** Բնագիրն ունի՝ Աբդիւլ-Մէջիդ:

Յունուար 5ին կաթողիկեայ Հայերն իբրեւ օրինաւոր գոյութիւն ունեցող հասարակութիւն ճանչցաւ։ Ասոնց յատուկ աշխարհական Մեծ մը դրուեցաւ, որ "Պատրիարք" (Փաթրիք) անունն ունէր։ Իսկ Կ. Պոլսոյ եւ Փոքր Ասիոյ հոգեւոր եկեղեցական պետը՝ Արքեպիսկոպոս եւ Նախագահ անունը կը կրէր։ Երրորդ Նախագահն Անտոն Հասուն (1846էն ի վեր) Գրիգոր Պետրոս Ը.ի Սսոյ Պատրիարքին մահուանէն ետքը (1846—1866) հայ եպիսկոպոսաց ժողովոյն մէջ, որուն Երուսաղեմի Վալերգա Պատրիարքը նախագահ էր, եւ որուն մինչեւ այն ատեն ժողովոյ մասնակցող աշխարհականները ամենեւին մասնակցութիւն չունեցան, 1866 Սեպտ. 14ին Պատրիարք ընտրուեցաւ՝ Անտոն Հասուն Պետրոս Թ. անուամբ։ Իրաւաբանական յարաբերութիւնները կանոնաւորելու համար՝ Պիոս Թ. յամին 1867 Յուլ. 12ին „Reversurus“ կոնդակը տուաւ, որով Կիլիկիոյ պատրիարքութեան թեմերը Կ. Պոլսոյն հետ կը միացընէր, եւ կաթողիկեայ Հայ եկեղեցւոյ մինչեւ այն ատեն ունեցած ազատութիւնները մեծապէս կը չափաւորէր. այսպէս՝ յառաջագոյն եպիսկոպոսն ազատօրէն կ'ընտրուէր, իսկ այս կարգադրութեամբ՝ երեք ընտրեալ պիտի անուանուէր եւ Պատրիարքին ձեռօք Ս. Աթոռոյն պիտի ներկայացուէր. դարձեալ Պատրիարքն ամէն հինգ տարի անգամ մը Առաքելոց Սեմքը պիտի այցելէր։ Սակայն միացեալ Հայոց մէկ մեծ մասը եկեղեցական հին սովորութեանց յարած մնաց։ Տաճկական պետութենէն նեցուկ գտնելով՝ մերժեցին „Reversurus“ը, եւ իրենք զիրենք "Արեւելեան կաթողիկեայք" անուանեցին։ 1870ին, Վատիկանեան ժողովոյն առթիւ, Հռոմէն կերպապէս ալ բաժնուեցան*։ Միացեալ Հայոց մէջէն մասու-

* Ասոնք Հռոմայ Քահանայապետաց գլխաւորութիւնը միշտ կ'ընդունէին, եւ իրենք զիրենք Հռոմէն բաժանեալ չէին նկատեր։

բաւէս զարգացեալներն, այսպէս ամբողջ Անտոնեան Միաբանութիւնը նաեւ Վենետկի Մխիթարեանց մէկ մեծ մասը, այս կողմն էին: Պիոս Թ. 1870 Մայիս 20ին բազմաթիւ եկեղեցականներ կախակայեց պաշտօնէն: Եւ երբ ասոնք չհպատակեցան, 4 եպիսկոպոս եւ 45 Վարդապետ բանադրեց: Այս վաղահաս պատժոյն հետեւութիւնն այն եղաւ՝ որ անջատեալներն ինքնակաց կազմակերպութիւն առին քաղաքական Պատրիարք դնելով Յովհաննէս Քիւփէլեանը եւ եկեղեցական Պատրիարք՝ Յակոբ Պահթիարեան Տիգրանակերտի եպիսկոպոսը. բայց վերջինս յանձն չառաւ: Հռոմայ՝(1870 եւ 1871) Պլուսիմ եւ Ֆրանքի Նուիրակներու առաքելական Թղթերով տաճկական պետութիւնը վաստկելու ջանքերն կատարելապէս անյաջող ելան: Հասուն Պատրիարքն 1872ին պետութեան կողմանէ աքսորուեցաւ, որ եւ գնաց Հռոմ նստաւ: Հազիւ 1874ին կաթողիկեայ Հայերը դարձեալ իրենց Պետն ունեցան:

Բայց ռուս-տաճկական պատերազմին պատճառաւ Բ. Դրան անձուկ վիճակն Հռոմ յօգուտ գործածեց՝ մէջերնին միաբանութիւն մը (Concordat) հաստատելու, որով Քիւփէլեանքն — այսպէս կ'անուանէր Հռոմ Արեւելեան կաթողիկեայքը — պետութիւնը Հռոմայ յանձնեց: Հետզհետէ առանձին հասարակութիւններ՝ իրենց առաջնորդներովը դարձեալ հաշտուեցան. 1879ին Ապր. 18ին Քիւփէլեան անձամբ Հռոմ գնաց եւ անձամբ Լեւոն ԺԳ Քահանայապետին հպատակութիւն յայտնեց: Բնականապէս այս առթիւ քանի մը եպիսկոպոս եւ վարդապետներ չմիացեալ Հայոց գացին յարեցան*: 1880 Դեկտ. 13ին Անտոն Հասուն՝ Սրբոցն Վիտալիսի, Գերվասիոսի եւ Պրոտասիոսի տիտղոսով — առաջին հայ — Կարդինալ անուանուեցաւ: Իւր յաջորդն իբրեւ Պատրիարք Կիլիկիոյ՝

---

* Ասոնց մէջ եպիսկոպոս չկար:

(Ciliciae Armenorum) 1881 Օգոստ. 4ին ընտրուեցաւ Ստեփաննոս Ազարեան՝ Ստեփաննոս Պետրոս Ժ անուամբ:

Մինչեւ այս տարին Հռոմ ուսում առնող Հայերն Հաւատոյ տարածման Վարժարանին մէջ կ'ուսանէին. Լեւոն ԺԳ իրենց համար յատուկ Վարժարան հաստատեց San Nicolò da Tolentino անուամբ: Յամին 1888 Յուլիս 25ին Քահանայապետն Շրջաբերական մ'ուղղեց "Առ մեծարոյ Եղբարս մեր՝ Ստեփաննոս Պետրոս Ժ, Պատրիարք Կիլիկիոյ, առ Արքեպիսկոպոսունս, եպիսկոպոսունս, եւ առ սիրելի որդիս մեր Քահանայս, Վանականս եւ առ հայածէս հաւատացեալս, որք ի շնորհս եւ ի հաղորդութեան ընդ առաքելական Աթոռոյ կապեալ են:„ Ասոր մէջ հանդիսապէս կ'ապահովցուի՝ որ աստուածային պաշտամանց մէջ հայերէն լեզուն եւ արարողութիւններն պիտի պահպանուին, եւ կը հաստատէ զայն ամենայն՝ ինչ որ Բենեդիկտոս ԺԴ Հայոց եւ այլ արեւելեան ծիսից անարատ պահպանութեան համար սահմանած է: Հմմտ. P. Donat Vernier, S. J., Histoire du patriarchat Arménien catholique, Lyon-Paris. 1891.*

Notizia statistica delle missioni cattoliche in tutto il mondo, Roma, coi tipi della S. C. di Propaganda fide 1843 (Նաեւ տես O. Mejer, Die Propoganda I, էջ 473— տպուած) հրատարակութեան համեմատ՝ 1843ին Կիլիկիոյ պատրիարքութիւնն (աթոռանիստն Խերբովան ի Լիբանան) ունէր 8.000 հաւատացեալ: Պատրիարքին ատընթերակաց էին 3 Արքեպիսկոպոսունք անուա-

* Հ. Վ. Ըստկարեան, Եկեղեցական պատմութիւն, Հանդերձ ազգային եկեղեցական պատմութեամբ, Վիեննա 1872: Ա. Արքեպ. Պալճեան, Պատմութիւն կաթողիկէ Վարդապետութեան ի Հայս եւ միութեան նոցա ընդ Հռոմէական Եկեղեցւոյ ի Փլորենտեան սիւնհոդոսի, Վիեննա, 1878:

նական թեմով (Ատանայի, Ամասիոյ եւ Մարաշի)։ Կեսարիոյ անուանական արքեպիսկոպոսը կը նստէր յԵւդոկիա՝ իբրեւ Փոխանորդ Փոքր Հայոց։ Նոյնպէս թեմական եպիսկոպոս ունէր Պատրիարքը միայն երկու, այն է Բերիոյ (Հալէպ) (500 ընտանիք) եւ Մէրդինի (200 ընտանիք) Արքեպիսկոպոսները։ Ատանայի, Տիգրանակերտի եւ Եւդոկիոյ թեմերը Պատրիարքն իբրեւ Մշտնջենաւոր առաջնորդ (Administratorperpetuus) կը կառավարէր։ Կ. Պոլսոյ Արքեպիսկոպոս-Նախագահին թեմն ունէր 27.000 հաւատացեալ։ Նախագահն ունէր օգնական մը, որ Արքեպիսկոպոս էր անուանական տիտղոսով, 5 Արտաքին օգնական (Vicarii foranei) եւ 78 քահանայ։ Պիուս Թ. 1850ին Անկիւրիա, Արդուին, Բրուսա, Կարին, Սպահան եւ Տրապիզոն եպիսկոպոսական թեմ ըրաւ միացեալ Հայոց համար ; եւ զասոնք Նախագահին իշխանութեան ստորակարգեց։ Աւստրիա-Հունգարիա 14.000 հայ կաթողիկեայ հաւատացեալ կը հաշուի։ Ի Լեմբերգ կայ հայ Արքեպիսկոպոսութիւն մը։ Ռուսաստանի (Խրիմ, Ղազան, Աստրախան) 28.144 կաթողիկեայ Հայերը Մխիթարեան վարդապետներու եւ Քափուչին կրօնաւորաց ձեռքն են։ 1847ին միաբանուեցաւ երկու եպիսկոպոսութիւն հաստատել, բայց չգործադրուեցաւ. եւ Բերլինի 1878ի խաղաղութեամբ Արդուինի եպիսկոպոսութիւնը Ռուսաց բաժնին անցաւ (թէեւ այժմ դատարկ է աթոռը)։

Վենետիկի Մխիթարեանները, որոնց Ընդհանրական Աբբահայրը Տրայանոպոլսոյ Արքեպիսկոպոսի անուանական տիտղոսն ունի, այժմ ունին վանատուն եւ եկեղեցի ի Սամոշույվար* (Տրանսիլվանիա), Կ. Պոլիս, Տրապիզոն, Բաղչէջիք, Թէոդոսիա, Խարասուբազար եւ Սիմֆերոպոլ։ Ի Կ. Պոլիս, Տրապիզոն եւ Բաղչէջիք նաեւ դպրոց

* Ուղղէ՝ Եղիսաբեթուպոլիս:

ունին: 8—10 վարդապետք կը գործեն ի Խրիմ, Կաւկաս եւ Պարսկաստան:

Վիեննայի Մխիթարեանք, որոնց Ընդհանրական Աբբահայրը Կիպրոսի Սաղամինայի Արքեպիսկոպոսի անուանական տիտղոսն ունի, ունին վանատուն եւ եկեղեցի ի Տրիեստ, Նայսաց, Կ. Պոլիս, Զմիւռնիա, Այդըն. վերջին երեքին մէջ նաեւ դպրոց: Առանձնական վարդապետք կան ի Սամոշույվար, Լեհաստան, Տրապիզոն, Կարին:

Տղոց կրթութեան կը նային նաեւ եւրոպացի կրօնաւորներ: Յիսուսեանք ունին վեց հիմնարկութիւն՝ ի Մարսուան, Ամասիա, Եւդոկիա, Սեբաստիա, Կեսարիա եւ Ատանա: Դոմինիկեանք ունին Վանայ մէջ վանատուն մը: Փրանկիսկեանք ի Մալաթիա եւ ի Խարբերդ, որոնք նաեւ հոգ հոգւոց ունին:

Հռոմայ հետ միացեալ Հայոց այժմու վիճակը հետեւեալն է (Հմմտ. Missiones catholicae cura S. Congregationis de propaganda fide descriptae anno 1895, Romae ex typographia polyglotta S. C. de prop. fide 1895.)

Կիլիկիոյ Պատրիարքին այժմու աթոռանիստն է Կ. Պոլիս. որ եւ այս թեմին թեմականն է: Այս թեմին մէջ կայ 16.000 հայ կաթոլիկեայ, 13 հասարակութիւն, 85 քահանայ (միասին հաշուած 16 Մխիթարեան Վենետիկի, 10 Մխիթարեան Վիեննայի եւ 14 Անտոնեան), 5 մանչերու եւ 3 աղջկանց դպրոց, 2 Վարժարան բաց ի Պատրիարքին դպրանոցէն, եւ 1 բարձրագոյն դպրոց: Վանատուն Մխիթարեանց Վենետկի ի Քաղկեդոն, Մխիթարեանց Վիեննայի ի Փանկալդի, Անտոնեանց յՕրթաքէօյ. 1 վանք Անարատ Յղութեան կուսանաց:

Պատրիարքին ստորակարգեալ են հետեւեալ եպիսկոպոսութիւնները. 1. Ատանա, ունի 1500 կաթոլիկեայ հայ (այսպէս 1891ի Missiones,

իսկ 1895ի Հրատարակութիւնը տպագրական սխալմամբ մը բովանդակ քրիստոնէից 3000 թիւը՝ Հայոց ալ կու տայ), 8 քահանայ, առնցմէ զատ՝ Գապուչինք, Յիսուսեանք, Լազարիստք եւ Տրապպիստք, եւ 7 մանչերու եւ 2 աղջկանց դպրոց։ **2.** Բերիա, ունի 7500 կաթողիկեայ Հայ, 15 տեղացի քահանայ, առնցմէ զատ Յիսուսեանք եւ Փրանկիսկեանք, եւ 4 տարրական դպրոց։ **3.** Տիգրանակերտ 5000 կաթողիկեայ Հայ, 18 քահանայ, 3 Գապուչին. եւ 12 տարրական դպրոց։ **4.** Անկիւրիա, 1850ին եպիսկոպոսութիւն հաստատուած. 8000 կաթողիկեայ Հայ, 28 քահանայ, կղերանոց մը տասը աշակերտով, 10 մանչերու եւ 8 աղջկանց դպրոց։ **5.** Բրուսա, 1850ին հաստատուած. 3000 կաթողիկեայ Հայ, 8 քահանայ, որմէ 5 հայազգի. 4 մանչերու եւ 3 աղջկանց դպրոց։ **6.** Կեսարիա, 1500 կաթողիկեայ Հայ, 3 հայազգի քահանայ, 4 Յիսուսեան. 2 տարրական դպրոց։ **7.** Կարին, 1850ին հաստատուած, 10.000 կաթողիկեայ Հայ. 54 հայազգի քահանայ (որոնցմէ 1 Վենետկի Մխիթարեան եւ 1 Անտոնեան*) 2 Գապուչին, 5 Դպրոցական Եղբարք (գաղղիացի) ի Կարին կղերանոց մը, 17 մանչերու 1 աղջկանց դպրոց։ **8.** Խարբերդ, 1700 կաթողիկեայ Հայ, 4 քահանայ, 10 դպրոց։ **9.** Մարաշ, 6000 կաթողիկեայ Հայ, 10 քահանայ, 3 Փրանկիսկեան, 4 դպրոց։ **10.** Մէրդին, 8000 կթղկ. Հայ, 13 քահանայ, 3 Գապուչին, 7 դպրոց։ **11.** Մալաթիա, 4000 կթղկ. Հայ, 7 քահանայ, 8 դպրոց։ **12.** Մուշ 1883ին հաստատուած, 6000 կթղկ. Հայ, 6 քահանայ, եւ 4 Դոմինիկեան, 2 դպրոց։ Վենետկի Մխիթարեանց վանատուն մը՝ 3 հոգի։ **13.** Սեբաստիոյ եւ Եւդոկիոյ միացեալ թեմերը, 3000 կթղկ. Հայ, 8 քահանայ։ **14.** Տրապիզոն 1850ին հաստատուած։

---

* Այժմ միայն մէկ Վիեննայի Մխիթարեան:

5000 կթղկ. հայ, 14 քահանայ, քանի մը Քափուչին եւ Դպրոցական եղբարք, 4 դպրոց, եւ Վիեննայի Մխիթարեանց վանատուն մը*։

Անարատ Ցղութեան Կարգի կուսանքն աղջկանց դպրոց ունին բաց ի Կ. Պոլսոյ, նաեւ յԱտանա, Անկիւրիա, Բրուսա, Կարին, Մալաթիա, Սեբաստիա եւ Տրապիզոն։

Ամէն թեմերու մէջ ալ եկեղեցական պաշտամանց լեզուն է հին հայերէնն։ Վերն յիշուած Missiones գրքին մէջ (էջ 581—2) Մշոյ եւ Սեբաստիա-Եւդոկիոյ համար (բառ առ բառ նոյն նաեւ առաջին հրատարակութիւններու մէջ) կը դրուի երկմիտ բացատրութիւն մը՝ „lingua vulgaris est armena, quae et liturgica est", զոր անշուշտ պէտք է հասկընալ՝ թէ եկեղեցական լեզուն հայերէն է, առանց զանազանութիւն ընելու ժողովրդեան եւ եկեղեցւոյ լեզուին, եւ ոչ թէ այն իմաստով՝ թէ ժողովրդեան խօսած լեզուն այս տեղերը նաեւ եկեղեցական լեզուն ըլլայ։**

Այս պատրիարքական վիճակին կը վերաբերին նաեւ՝ Եգիպտոսի Աղեքսանդրիոյ եպիսկոպոսութիւնը, 1200 կթղկ. հայ, 5 Անտոնեանք***։ Դպրոցներու ուսուցչութիւնն եւ նաեւ հոգ հոգւոցը շատ տեղ լատինածէս քահանաներ կը հոգան։ Սպահան 1850ին հաստատուած։ Արդուին 1850ին հաստատուած, այժմ Ռուսաց տակ, եկեղեցական լեզուն հին հայերէն, 12.000 կթղկ. հայ, 23 հայ քահանայ, 22 դպրոց։ Աղջկանց կրթութիւնը կը հոգան Անարատ Ցղութեան Կարգի կուսանք։

Կ. Պոլսոյ Պատրիարքին իշխանութեան տակ չէ Աւստրիոյ Լեմբերգ քաղաքի հայ թեմը. (dioc-

---

* Եւ 1 Վիեննայի Մխիթարեան:

** Հասկընալու է այսպէս. ժողովրդեան լեզուն հայերէն է, հայերէն է նաեւ եկեղ. պաշտամանց լեզուն (յաւել՝ գրաբար):

*** Այժմ չկան:

cesis Leopolitana ritus armeni cathol.), *որ 1626-ին Մետրոպոլտի աստիճան բարձրացաւ (յառաջագոյն կամենիցի եւ Մոհիլեվի օգնական եպիսկոպոս էր)։ 1819էն ի վեր Արքեպիսկոպոս կ'անուանէ Աւստրիոյ կայսրը՝ եկեղեցականաց ժողովէն ընտրեալ երեքէն մէկը։ Արքեպիսկոպոսն հասարակութենէն կ'ընդունի* 50 *սկուդ. Պրոպագանդայէն* 200, *եւ Կայսրմէ* 3000 *գուլդէն ըստ ժամանակին։ Թեմին մէջ կան* 4.500 *կթղկէ. Հայ. եկեղեցական լեզուն է հին հայերէն.* 10 *ժողովրդապետութիւն ունի եւ* 18 *քահանայ. կղերը լատինաց կղերանոցը ուսում կ'առնու. կայ նաեւ Հայ Բենեդիկտեան կուսանաց վանք մը՝ որ աղջկանց կրթութեան կը զբաղի։*

*Ըստ այսմ՝ Պրոպագանդայի ցուցակին համեմատ՝ բովանդակ կաթողիկեայ Հայոց թիւն է* 103.900 *այս թուոյն մէջ առնուած չեն Հունգարիոյ (Սամոշույվար), Ռուսաստանի (Արդուինի թեմէն դուրս) եւ Պարսկաստանի կաթողիկեայ Հայերը։**

---

* *Որոնք վերջին տեղեկութեանց համեմատ ապահովապէս 35.000 կան: Ուրեմն միասին իբր 140.000:*

*Կաթողիկեայ (կամ "միացեալ„ եւ "հռոմէական„ կոչուած) հայ հասարակութիւնն Էջմիածնի (կամ "լուսաւորչական„', "գրիգորեան„, եւ "չմիացեալ„ կոչուած) հայ հասարակութենէն կը տարբերի ի յաջորդս:*

*Ա. Ի ՀԱՒԱՏՈՑՍ. 1. Առաքելոց եւ Ս. Հարց վարդապետութեան հետեւելով, որ նաեւ Քաղկեդոնի Ս. Ժողովին մէջ դաւանուեցաւ հանդիսապէս ընդդէմ Եւտիքեայ. կը դաւանի թէ Քրիստոս Տէրն մեր իբրեւ Աստուած մարդացեալ՝ է Աստուած եւ մարդ, հետեւաբար ունի աստուածային եւ մարդկային, ուրեմն երկու զատ զատ բնութիւն, մէկ Աստուածային անձին վրայ անխառն միաւորեալ, եւ ոչ թէ՝ մի բնութիւն, ինչպէս Եւտիքեանք իրարմէ քիչ զանազանութեամբ կը դաւանին: "Երկու բնութիւն„ դաւանող Հայերը Ձ. դարէն սկսեալ՝ "մի բնութիւն„ (միաբնակք) դաւա-*

Հայոց մէջ բողոքական (աւետարանական) համարակութեանց կազմութիլը նորագոյն ժամանակի գործ է, որ գլխաւորաբար Ռուսական եւ Անգղիական

---

նողներէն "Երկաբնակք" կամ "Քաղկեդոնիկք" կ'անուանուին:

2. Հոգին սուրբ թէ ի Հօրէ եւ թէ յՈրդւոյ կը բղխէ, իբրեւ մի միակ աղբերէ, մէկ գործողութեամբ, ինչպէս Հայոց եկեղեցին ի սկզբանէ ի վեր շատ դարեր կը դաւանէր, եւ ոչ թէ ի Հօրէ միայն, ինչպէս Յոյնք եւ անոնց հետեւողք կը դաւանին:

3. Մարդս մեռնելուն պէս՝ իւր գործոց համեմատ իսկոյն կամ յաւիտեան կը դատապարտուի, կամ յաւիտենական երանութեան կը մտնէ, եթէ բոլորովին անարատ է առաջի Աստուծոյ: Իսկ եթէ քաւելու բան մ'ունի. կը քաւէ զայն քաւարանի մէջ. եւ մեր նպաստներովն ալ (սուրբ Պատարագ մատուցանել, ողորմութիւն տալ, եւն, ի հանգիստ հոգւոյ հանգուցելոյն) բոլորովին սրբուելէն ետեւ՝ անմիջապէս կը մտնէ յաւիտենական երանութեան, առանց սպասելու աշխարհիս կատարածին:

4. Վերջին Օծումն ի Քրիստոսէ հաստատեալ եօթը սուրբ Խորհուրդներէն մէկն է, զոր ամէն հաւատացեալ հիւանդ՝ մահուան վտանգին մէջ՝ Ապաշխարութեան Խորհրդէն ետեւ՝ առնելու պարտական է:

5. Քրիստոնէական Եկեղեցւոյ Ընդհանուր գլուխն է Հռոմայ Քահանայապետն, իբրեւ տեսանելի փոխանորդ Քրիստոսի, եւ յաջորդ Ս. Պետրոսի գլխաւոր Առաքելոյն: Հետեւաբար ամէն քրիստոնեայ պարտական է հնազանդիլ անոր ի կրօնականս: Իսկ հաւատոյ եւ բարոյից վերաբերեալ խնդրոց մէջ, եթէ անիկա իբրեւ գլուխ եկեղեցւոյ՝ ամէն հաւատացեալները պարտաւորիչ վճիռ մը տայ, Հոգւոյն Սրբոյ առընթերակայութեան պատճառաւ՝ չի կրնար սխալ վճիռ տալ:

Իսկ Բ. ՅԱՐԱՐՈՂԱԿԱՆՍ: Կաթողիկեայ Հայք բովանդակ քրիստոնեայ եկեղեցւոյ ընդհանուր եւ միշտ տիրող սովորութեան համեմատ՝ սուրբ Պատարագի մէջ սրբագործուելի գինւոյն քանի մը կաթիլ ջուր կը խառնեն. թէեւ առանց ասոր ալ խորհուրդը վաւերապէս կը կատարուի:

Աստուածաշնչի Ընկերութեանց ձեռօք Ս. Գրոց գրաբար թարգմանութիւնը տարածելով յառաջ եկած է։ Գրաբար թարգմանութեամբ եկեղեցականներու վրայ ազդեցութիւն գործուած է. իսկ Անգղիական Աստուածաշնչի Ընկերութիւնը Ս. Գրոց աշխարհաբար եւ տաճկերէն թարգմանութիւններով ամէն աշխարհականի Ս. Գիրքը մատ-

---

Կաթողիկեայ Հայք կը հաստատեն՝ թէ իրենց այս հաւատքը Ս. Գր. Լուսաւորչէն մինչեւ Բաբգէն կաթողիկոսի 508ին ի Դուին գումարած ժողովը, Հայոց եկեղեցւոյն հաւատքին եւ աստուածաբանական սկզբանց հետ նոյն է, եւ թէ իրենք այս հին հայ եկեղեցւոյն հաւատարիմ հետեւողքն են:

Իսկ հաւատոյ ուրիշ ամէն վարդապետութիւններուն, ինչպէս նաեւ արարողականին մէջ (Պատարագի, Խորհրդոց եւն լեզուն, զգեստեղէնք, ծէս, տօներն եւն) Էջմիածնական եկեղեցւոյ հետ նոյն է: Բայց երկու եկեղեցիք ալ ունին ինչ ինչ որ ի սկզբանէ կամ յընթացս ժամանակաց՝ Ասորիներէն, Յոյներէն եւ Լատիններէն առած են ըստ պատշաճութեան: Այսպէս օրինակ՝ երկու եկեղեցեաց ճշդիւ նոյն Պատարագն ամբողջ՝ Յունացմէ առնուած է թարգմանութեամբ, եւ Կիլիկեանց ժամանակ Լատինացիներէն առնելով ճոխացուած է. ինչպէս՝ "Եւ վասն Սրբուհւոյ Աստուածածնին" աղօթքէն մինչեւ Ժամամուտ, դարձեալ ԺԷ դարուն՝ վերջին Աւետարանի (Ի սկզբանէ էր Բանն) սովորութիւնն, եւ ուրիշ այսպիսի բաներ (Տես՝ Գաթըրճեան Հ. Յ., Սրբազան Պատարագամատոյցք Հայոց, մամլոյ տակ): Եւ առ հասարակ "յատուկ ազգային" կոչուած եկեղեցական շատ բան՝ ըստ պիտոյից օտար քրիստոնեաներէն առնուած է ի սկզբան դարձի ազգիս, կամ յընթացս դարուց, պարզապէս թարգմանութեամբ կամ յաւելուածներով:

Ուրեմն երկու հայ հասարակութեան մէջ եղած տարբերութիւնը 5–6 էական կէտերու մէջ է միայն, որ յընթացս ժամանակաց օտար (ասորի եւ յոյն) եկեղեցականներու ազդեցութեամբ յառաջ եկած է:

չելի ընելու ջանացած է։ 1831էն ի վեր Ամերիկայի Բորդ ընկերութեան միսիոնարները նախ Տաճկաստանի մայրաքաղաքին մէջ եւ յետոյ գաւառներու մէջ կը գործեն։ Անոնք ի սկզբան սիրով ընդունեցան, բայց արդէն 1839ին եկեղեցականաց հետ կռուին սկսաւ, եւ 1844ին Մատթէոս Պատրիարքը բողոքականաց վրայ բանադրանք դրաւ։ 1850էն ի վեր, միւս կրօնական հասարակութիւններու պէս, անոնք ալ աշխարհական Ազգապետ մ՚ունեցան, որով քաղաքացիական անկախութիւն ստացան։ Անկէ սկսեալ առաքելութիւնք մեծամեծ յառաջադիմութիւններ ըրաւ։ Թէեւ դարձեալ անջատուելու ջանքեր չեն պակսիր, եւ Ամերիկայի Բորդ Ընկերութեան 1883ին կազմակերպած քննիչ մարմինը կը վկայէ՝ որ Հայերէն շատերը կը ցաւին մայր եկեղեցիէն անջատուելնուն վրայ։ Պէտք չէ մոռնալ՝ որ Հայուն համար կրօն եւ ազգ միացեալ տարրներ են։ Ամէն Հայ կ՚ուզէ միայն այն հաւատքն ունենալ՝ զոր Գրիգոր Լուսաւորիչ քարոզած է։ Եւ եթէ Հայոց Առաքելոյն վրայ աւանդուածներէն մէկը պատմական ստուգութիւն ունի, այն է իրեն սորվեցուցած Սրբոց եւ սուրբ նշխարաց մեծ յարգութիւնը, ինչպէս որ սովորութիւն էր հին եկեղեցւոյ մէջ։ Բողոքականք իրենց պարզած վարդապետութեամբքն Հայոց ամենահին եւ ամենանուիրական աւանդութեան հակառակ կ՚ելլեն։

Բողոքականութեան գործը Տաճկաստանի մէջ պետութեան դժկամակութենէն ալ շատ կրած է։ Ըստ հաճոյս կը փակուին դպրոցներն, միսիոնարք կը ձերբակալուին եւ գրքեր կը գրաւուին։ Իսկ այժմու կանոնաւոր հալածանքներով իրաց վիճակը շատ վատթարած է։

Ի Կ. Պոլիս կան 819 բողոքական Հայ, եւ 150 Հաղորդականք։ Միսիոնարք հայերէն եւ հայատառ-տաճկերէն լրագիրներ կը հրատարակեն։ Բէբէկի 1840—1862 աստուածաբանական դպրոցը

Մարսուան փոխադրուեցաւ. Ռոբերտ Ամերիկացւոյն առատաձեռնութեամբ 1863ին ի Բէբէկ 850.000 ֆրանկով կառուցուած վարժարանը բազմաթիւ Հայ աշակերտներ կը յաճախեն։

Արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ (Հետեւեալ թուերը կ'արժեն 1894ի համար) կը հաշուին 3.538 անդամք եկեղեցւոյ, 35 եկեղեցւոյ բաժանուած, որոնք տարին 142.500 ֆր. հանգանակ կը վճարեն։ (Մտադիր կ'ընենք, որ այստեղ եւ վարը Կիլիկիոյ եւ Հիւսիսային Ասորիքի մասին ըսուածին մէջ կը բովանդակուին Հայերէն զատ՝ նաեւ բողոքական Յոյներու, Նեստորականներու եւն չնչին թիւը)։ Կայանք կան 1. Նիկոմեդիա 1846էն ի վեր, որ վերջերս Կ. Պոլսոյ միսիոնին հետ միացաւ։ Բաղչէջիք կայ բարձրագոյն դպրոց մը մանչերու, եւ յԱդաբազար՝ աղջկանց։ 2. Բրուսա 1848էն ի վեր կայ 2 եկեղեցի, աղջկանց վարժարան մը բազմաթիւ աշակերտով, եւ 10 երկրորդական կայաններ։ 3. Զմիւռնիա 1830էն ի վեր։ 4. Մարսուան 1852էն ի վեր. 1865էն ի վեր կայ այստեղ աստուածաբանական դպրանոց (1894ին 123 աշակերտներէն 94ը Հայ էին.) եւ աղջկանց դպրոց։ Բողոքական հասարակութիւնը ծախքերն ինքը կը հոգայ, բաց ասկէ նաեւ չորս կանոնաւորեալ եկեղեցիներունը՝ Ամասիա, Քափուքայա, Վէզիրքէօփրիւ, եւ Սամսոն։ Նաեւ Քաստամոնի կայ փոքրիկ հասարակութիւն մը։ 5. Սեբաստիա 1855էն ի վեր։ 6. Կեսարիա, ունի ի Կեսարիա եւ Եօզղատ բարձրագոյն վարժարան, եւ Թալասի մէջ աղջկանց բարձր վարժարան։ 1885ին Աւետիս Վարդապետ 500 հոգւով բողոքական հասարակութեան յարեցաւ. 1878ին յԱնկիւրիա Հայ եպիսկոպոս մը 65 ընտանիքով բողոքականութիւն ընդունեցաւ։ 7. Տրապիզոն, Օրդուի երկրորդական կայանով։

Կիլիկիա եւ Հիւսիսային Ասորիք 5091 անդամք եկեղեցեաց կան եւ 34 եկեղեցի։ Կայանքն

են՝ 1. Մարաշ 1854էն ի վեր, ուր 1859 աստուածաբանական վարժարան հաստատեցաւ, եւ 1882 աղջկանց վարժարան, եկեղեցիք՝ Ալբիստան, Հաջին եւ Զէյթուն։ Գրիգոր Պէհէզնիլեանի Տարսոնի առաքելութիւնը 1892էն ի վեր Լոնդոնէն նպաստ կ'ընդունի։ 2 Այնթափի հասարակութիւնը 1848էն ի վեր. աղջկանց մեծ վարժարան՝ ամերիկացի ուսուցչուհեաց ձեռքը։ Վարժարան 1876էն ի վեր։ 1863էն ի վեր կայ անգղիական հասարակութիւն մը՝ Մկրտիչ եպիսկոպոսին կառավարութեան տակ։ Երկրորդական կայանք են՝ Քեսաբ, Բերիա (80 հայ բողոք.) եւ Ուրֆա (900 բողոքկն.)։

Ի Հայս, Քրդաստան եւ Միջագետք ամերիկեան Բորդը ունի 5 կայան՝ 132 երկրորդական կայաններով, 43 եկեղեցի, 2879 անդամք եկեղեցւոյ, 2 աստուածաբանական դպրանոց, 15 բարձրագոյն վարժարան մանչերու, 5 վարժարան աղջկանց, 150 հասարակ դպրոց 7767 աշակերտներով, եւ կ'ընդունի իբր 55.000 ֆր. ի հանգանակութենէ։ Այս գաւառներու ամբողջ բողոքականաց թիւն է 16.000. ասկէ հայ հասարակութիւնն ունի 15.000 հաղորդուող։ Կայաններն են 1. Կարին 1839էն ի վեր “Արարատ„ բարձրագոյն վարժարանով, եւ Երզնկա։ 2. Բաղէշ 1858էն ի վեր մանչերու բարձրագոյն դպրոցով եւ աղջկանց կրթարանով։ 3. Վան 1872էն ի վեր մանչերու եւ աղջկանց դպրոցով։ 4. Խարբերդ 1855էն ի վեր ունի 22 հասարակութիւն, 1717 անդամք եկեղեցւոյ, որոնք իբր 31.450 ֆր. կը հանգանակեն, աստուածաբանական վարժարան, 1878էն ի վեր “Արմենիա„ վարժարանը, աղջկանց բարձրագոյն վարժարան։ Երկրորդական ճիւղեր Արաբկիր. Մալաթիա, Չէպիք եւ Ռէդվան (Քրդական)։ Ի Տիգրանակերտ կայ անգղիական երիցական եկեղեցի 1862էն ի վեր, եւ այստեղ աւելի յաջողութեամբ կը գործէ, քան Բորդի ընկերութիւնը։ 5. Մէրդին, միսիոնարք

բաց ի Հայոց՝ նաեւ Ցակոբիկեանց մէջ կը գործեն*։

Պարսկաստանի Հայերն ունին բողոքական հասարակութիւն ի Դաւրէժ, Թեհերան եւ Սպահան։

Նոյնպէս Ռուսական Հայաստան բողոքականք կան։ Ի Շուշի 1822—1835 կը գործէր Բազելշու միսիոնը, երբ Ռուսական կառավարութիւնը աւետարանական առաքելութիւնը խափանեց։ Եւ սակայն այնտեղ ցայսօր կայ բաւական մեծ աւետարանական հայ հասարակութիւն։ Ամենէն մեծն է Շամախիի հասարակութիւնը, որ 1866ին լութերական հասարակութեան հետ միացաւ։ Գարագալա, Կարսէն գաղթած բողոքական Հայոց գիւղը, 1883ին ամերիկեան միսիոնարաց հետ միացաւ։ Շվեդական միսիոնարներ կը գործեն ի Տփղիս, 1882էն ի վեր ի Բագու, 1883էն ի վեր ի Լէնկորան եւ 1885էն ի վեր ի Շամախի։ Այս հասարակութիւններն ալ հայ եկեղեցականներու ընդդիմութիւններէն եւ ռուս կառավարութեան խստութենէն առեն մը շատ կրեցին։ Տես H. Gurdert, Die Evangelische Mission, ihre Länder, Völker und Arbeiten. Calw und Stuttgart 1894 էջ 198—, 204—, 209—: General v. Z., Armenien und die Armenier Allg. Kons. Monatschrift. 1896.**

Աւետարանին Հայոց մէջ տարածուելուն պատմութեան վրայ կայ կարգ մը լաւ յօդուածներ հայերէն "Բիւրակն" լրագրի մէջ, 1891, էջ 9, 41, 73 եւն։ Նոյն լրագիրը 1890ին էջ 156 հրատարակեց „Star in the east" ի համեմատ (եւ չկրցայ գործածել) Տաճկաստանի բոլոր բողոքականաց

* Գաբրիէլեան Մ. Սմբատ, Հայ բողոքականութեան անցեալն ու ապագայն (արտատպած "Արեւելքէն") Կ.Պոլ. 1888:

** Ղուկասեան Հ., Բողոքականութիւնը Կովկասու Հայոց մէջ. պատմական նիւթեր: Տփղ. 1886:

(որոնց մէջ Հայերը մեծամասնութիւնը կը կազմեն) ամբողջական թիւը 45.721 հոգի։*

---

* Գերմանիայի նորակազմ Հայոց նպաստամատոյց ընկերութեան «Կենդրոնական Ցանձնաժողովին» այս 1897ին հրատարակած մէկ յայտարարութեան համեմատ՝ «Ամերիկայի Միսիոնարներու ընկերութիւնն այժմ ի Տաճկաստան ունի 223 միսիոնար եւ 1094 հայ Պաստոր, քարոզիչ եւ ուսուցիչ, 155 եկեղեցի եւ 281 քարոզատեղի, 15.528 հաղորդուող։ Իրենց միսիոնարական հիմնարկութիւնները, առանց հաշուելու եկեղեցիներն ու դպրոցները, իբր 60 միլիոն ֆրանկի արժէք ունին։ Իրենց տարեկան ծախքն է 9,500.000 ֆր.։ Բողոքականութեան սկիզբէն ի վեր ի Տաճկաստան առ նուազն 241 միլիոն ֆր. ծախք ըրած են։ Կիրակնօրեայ պաշտամանց ներկայ գտնուողներու միջին թիւն է 40.000, իսկ կիրակնօրեայ դպրոցներու ներկայ գտնուողներունը 35.000։ Ամերիկեան միսիոնարները ունին Տաճկաստանի մէջ 5 բարձրագոյն վարժարան երկու սեռի համար, 6 աստուածաբանական դպրանոց, 80 բարձրագոյն դըպրոց մանչերու եւ թոշակաւոր աղջկանց, միասին 4085 աշակերտներով, 530 տարրական դպրոց մանչերու եւ աղջկանց 23.315 աշակերտով, ուրեմն միասին 621 դպրոց՝ 27.400 աշակերտով։ Այս դպրոցներն ըստ մասին նաեւ ուրիշ դաւանութեանց տղաքը կը յաճախեն, բայց միսիոնարաց գլխաւոր գործը Հայոց մէջ է։ Բողոքական Հայոց թիւը 70.000 կը համարուի։» Հայ բողոքական հասարակութեան անդամներն առանց բացառութեան չմիացեալ Հայոցմէ վաստկուած են, եւ այս զարհուրելի ծախուց, դպրոցներու եւն արդիւնքը զուցէ ամէնէն ուշ 20—30 տարի ետքը այն պիտի ըլլայ՝ որ անոնց մեծամասնութիւնը բողոքականութեան պիտի պատկանի, որուն վերջին ցաւալի դէպքերն ալ մեծապէս կը նպաստեն մէկ կողման նուազմամբը, միւս կողման որբանոցներով եւն աճմամբը։

Բողոքական հայ հասարակութիւնը՝ միացեալ առանձին հասարակութիւն մը չէ, այլ միութիւնը միայն յընդհանուրն է։ Իրենց մէջ տիրող այլեւայլ աստուածաբանական կարծիքներու կամ դրութիւններու համեմատ՝

Կաւկաս գաղթած բազմաթիւ ռուս աղանդաւորներ՝ աւետարանականներու հետ մեծապէս բարեկամական յարաբերութիւն ունին։ Նոյնպէս նաեւ Հայ “աղանդաւորները„։ Ռուս-տաճկական պատերազմէն ետքը 1828—29ին Կարնոյ թեմէն բազմաթիւ Հայեր իրենց Կարապետ եպիսկոպոսին հետ (որ վերջէն Տփղիսի Արքեպիսկոպոս եղաւ) ռուսական երկիրները գաղթեցին։ Ասոնցմէ ոմանք Արխվէլի (Ալեքսանդրոպոլի շրջանակ) գիւղն Հաս-

---

այլեւայլ հասարակութիւններ կը կազմեն. այսպէս Ամերիկեան, Անգղիական, Գերմանական, Հելուետական, Եպիսկոպոսական (որոնք եպիսկոպոսութիւն կ'ընդունին). Երիցական (որոնք քահանայութիւն կ'ընդունին), Աւետարանական, Մկրտական, Մորմոնեան եւն հայ բողոքական։ Ամէն տեսակն ալ միւս երկու հայ հասարակութիւններէն էապէս եւ մեծապէս կը տարբերին ի մասին կրօնի։ Իրենց էական վարդապետութիւններն են՝

1. Քրիստոսի վարդապետութիւնը միայն Ս. Գրքի մէջ բովանդակուած է, զոր ամէն մարդ պէտք է կարդալ եւ հասկնալ, եւ իւրաքանչիւրին հասկցածն է Քրիստոսի հաւատքը։

2. Փրկուելու համար բաւական է վստահ ըլլալ Քրիստոսի արդեանց վրայ։

3. Քրիստոսի եկեղեցւոյն մէջ ամենեւին խորհուրդ չկայ, (ըստ ոմանց՝ կայ միայն երկու խորհուրդ, Մկրտութիւն եւ Հաղորդութիւն, թէեւ ասոնց կատարումն էապէս կը տարբերի միւս քրիստոնէից արարողութենէն. ըստ այլոց՝ նաեւ Քահանայութիւն խորհուրդ է)։

4. Պատարագի եւ այլ արարողութիւններ, (ազգային) ծէս, բարեխօսութիւն Ս. Աստուածածնի եւ Սրբոց, Սրբոց նշխարաց՝ պատկերաց եւ ուխտատեղեաց յարգանք եւն աւելորդապաշտութիւնք են եւ չեն ընդունելի։

Բողոքական եկեղեցին հետեւաբար չունի այնպիսի տարրներ. որով այս կամ այն ազգին բողոքական եկեղեցին ուրիշ ազգի մը բողոքական եկեղեցիէն զանազանուի։

տատուեցան, զորոնք եկեղեցականներր "Թոնդրակեցի„ կ'անուանեն։ Ասոնք զՔրիստոս կը դաւանին Որդի Աստուծոյ, սակայն իբրեւ մարդ ծնած ի Մարեմայ։ Մկրտութիւնն ու միւռոնը Հայերու խաբէութիւն կը նկատեն, եւ իրենց հետեւողներէն երկրորդ մկրտութիւն կը պահանջեն։ Խաչի պաշտօնը, Սրբոց բարեխօսութիւնը, պատարագը, խոստովանութիւնն ու Հաղորդութիւնը կը մերժեն. պահք չեն պահեր, եւ Էջմիածին ու Երուսաղէմ ուխտագնացութիւնն անօգուտ է, կ'ըսեն։ Բայց ի ներքուստ կրօնասէր մարդիկ են։ Բողոքականներու հետ վերջին աստիճանի բարեկամ են, եւ իրենց ուսուցիչներէն մէկն ըսած է. "Բոլոր քրիստոնեայք կեղծ են. բաց ի գերմանացիներէն,* որոնք ճշմարիտ քրիստոնեայք են։„ Հմմտ. K.Ter-Mkrttschian, Die Thondrakier in unseren Tagen: „Zft. d. Kirchen-Geschichte“ 1896 էջ 253—. յէջն 264 կը դնէ նշանաւոր քաղուածոյք մը այս աղանդաւորայ 1782ին յօրինած "Բանալի ճշմարտութեան„ անուն քրիստոնէականէն։**

Հայոց ամբողջական թիւն է՝ ի Կաւկաս 959.371 (ամբողջ բնակչաց 20°/o), եւ Կաւկասի վարչական շրջանակներուն մէջ բաժանուած են հետեւեալ կերպով. Վարչութիւն (Gouvernement) Տփղիսի 211.743 (24, 2°/o), Վարչութիւն Երեւանի 375.700 (56°/o), Կարսի գաւառ 37.094 (21,

---

* Անշուշտ (գերմանացի) բողոքականներէն:

** Երիցեանց Ալ., Թոնդրակեցի Հայք մեր օրերում, "Փորձ„ 1880 Nr. 10, էջ 91--130: Հ. Բ. Սարգիսեան, Ուսումնասիրութ. Մանիքէա-Պաւղիկեան Թոնդրակեցիներու աղանդին: Վենետ. 1893: — Վանցեան Գ., Արեւորդւոց խնդիրը, "Հանդէս Ամսօրեայ„ 1896, էջ 12—19, եւ 148: — E. Tachella, Les anciens Pauliciens et les modernes Bulgares catholiques de la Philippopolitaine: „Le Muséon et la Revue des religions“, 1897, Nr. 1, p. 68—, 2, p. 113—.

3%), Վարչութիւն Քութայիսի 16.399 (1, 8%), Չէռնոմորսկի շրջանակ 2.077 (6, 8%), Վարչութիւն Եղիսաբեթօպոլի 258.324 (35, 4%), Վարչութիւն Բաքուի 55.459 (7, 8%), Դաղստանի գաւառ 1.054 (0, 2%), Սախաթալի շրջանակ 521 (0, 6%)։ Հմմտ. „Petermann's Mittheilungen" 1896, I, Selenoy und von Seidlitz, Die Verbreitung der Armenier in der Armenischen Türkei und in Transkaukasien, էջ 1—10.

Ռուսաստանի միւս մասերուն մէջ (Վարչ. Նոր Նախիջեւան, Բեսարաբիա եւ Աստրախան) ըստ J. Barchudarian, Die Armenier und ihre Nachbarvölker in der Türkei: „Ausland" 1891 Nr. 22, Հայոց թիւն 200.000 կը համարուի։ Հեղինակն այս թիւը ռուս աղբիւրներէ կ'առնու։ Բայց շատ բարձր հաշուուած կ'երեւայ, վասն զի նոյն հեղինակը Կովկասի համար 1,600.000 կը դնէ, փոխանակ 958.000։

Փոքր Ասիոյ այլեւայլ Վիլայէթներուն Հայոց թիւն է ըստ Cuinet, La Turquie d'Asie, Géographie administrative, statistique, descriptive et raisonnée de chaque province de l'Asie Mineure, Paris, 1891—1894, որ իւր թուերը կ'առնու բազմաթիւ ուղեգրութիւններէ, եւ տաճիկ պաշտօնեաներու պաշտօնական զեկուցումներէն կը հաստատուի. **1.** Կարին 120.466 (20, 3% ամբողջ բնակչաց). **2.** Բաղէշ 131.390 (33%). **3.** Վան 79.998 (18, 6%)։ **4.** Տիգրանակերտ 79.129 (16, 8%). **5.** Մամուրէթ-իւլ-Ազիզ (Խարբերդ-Մալաթիա-Դերսիմ) 69.718 (12, 1%). **6.** Սեբաստիա 170.433 (15, 7%), **7.** Տրապիզոն 47.200 (4, 5%). **8.** Բերիա 49.032 (4, 9%). **9.** Ատանա 97.450 (24 1%). **10.** Անկիւրիա 94.298 (10, 5%). **11.** Կոնիա 9.800 (0, 9%). **12.** Քաստամունի 2647 (0, 3%), **13.** Իզմիր 48.635 (21, 8%)։ **14.** Կ. Պոլիս 38.393*

* Անկէ կարելի է տեսնել Cuinetի ամբողջ այս թուերուն ճշդութեան աստիճանը։

(16%)· **15.** Բրուսա 88.991 (5, 5%)· **16.** Բիլա 1688 (1, 3%)· **17.** Զմիւռնիա 15.105 (1, 1%)· **18**· Արքիպեղագոս 38· **19**· Կրետէ 29։ Գումարն է այս 10 վիլայէթներու համար 939.000 (13, 6%) եւ ամբողջ Հայոց թիւն է առով 1,144.000 (8, 7%)։

Այս թուերն ռուս ընդհանուր տեղակալին (Generallieutenant) Selenoy քննութեան ենթարկեց („Petermann's Mittheilungen" անդ էջ 1—)։ Սելէնոյ այս թուերը կը համեմատէ Կարնոյ Ռուսաց զինուորական գործակատար եւ հիւպատոս Տրոտտերի թուոց հետ, զոր վերջինս 1880ին տաճկական վարչութեան պաշտօնական տեղեկութիւններէն առած էր։ Ասոր համեմատ 1—9 վիլայէթներու թիւն է 726.750 մինչդեռ ամբողջ բնակչաց թիւը 4,629.375։ Սակայն առանձնական իրադէտ անձինքներու բազմաթիւ վկայութեանց համեմատ՝ պէտք է այս թուերն 25% բարձրացընել, որով կ'ելլէ՝

| | Հայ | ամբողջ բնակիչ. |
|---|---|---|
| ըստ Տրոտտերի | 908.750 | 5,786.250 |
| ըստ Կիւինէի | 838.125 | 5,924.125 |

Կ. Պոլսոյ Պատրիարքարանին՝ Կարնոյ, Վանայ, Բաղէշու, Մամուրէթ-իւլ-Ազիզի, Տիգրանակերտի, Սեբաստիոյ եւ Բերիոյ վիլայէթներուն Հայոց նշանակած թիւը մեծապէս կը տարբերի։ Ասոր համեմատ Հայոց թիւն է 780.750. իսկ ամբողջ բնակչաց թիւը 1,831.250։ (Միեւնոյն վիլայէթներու համար Տրոտտէր կը դնէ 805.750, իսկ Կիւինէ 705.000 Հայ։) Այս տարբերութիւնն անով կը մեկնուի՝ որ Պատրիարքարանը կը հաշուէ միայն քրիստոնեայ գիւղերն եւ այն տեղերն՝ ուր քրիստոնեայք մահմետականաց հետ խառն կ'ապրին։ Զուտ մահմետական գիւղերու բնակիչները եկեղեցական վարչութիւնը չէր կրնար հաշուել։

Միայն Վանայ եւ Բաղէշու վիլայէթներուն Հայ բնակիչները առաւելութիւն ունին ամբողջ բնակչաց վրայ. այսպէս Վանայ Սանջակին (Վանայ վիլայէթը) եօթը կազաներու բնակիչներն են՝

| | Ամբողջ բնակիչ | Հայ |
|---|---|---|
| 1. Վան | 91.875 | 67.750 |
| 2. Արճէշ | 22.000 | 14.000 |
| 3. Մէօկս | 8.750 | 5.500 |
| 4. Ադիլջիվազ | 6.875 | 4.125 |
| 5. Կարչկիան | 9.500 | 5.250 |
| 6. Հէվաշ | 7.000 | 3.875 |
| 7. Շիտանկ | 18.000 | 9.000 |

դարձեալ Մշոյ Սանջակին (Բիթլիսի վիլայէթ) երկու կազաները

| | | |
|---|---|---|
| 1. Բուլանըք | 33.375 | 22.375 |
| 2. Մուշ | 84.875 | 52.875 |

Պարսից Հայաստան՝ ըստ Բարխուդարեանի (անդ) կան 42.000 Հայ, այն է՝ 21.000 Ատրպատական. որոնց 11.700ը Սալմաստ գաւառին մէջ, 2000 Խոյ. իսկ մնացեալը Մարաղա, Ուրմիա եւ Մակու քաղաքներուն մէջ: Նոր-Ջուղայի ժողովրդապետութիւնը ունի 20.800 հոգի, որոնք կը բնակին Նոր-Ջուղա 2.700, Թէհէրան 353, Փէրիա 7.500, Ջարնահատ 2.400, Կէաբլու 2.500 եւն:

Եգիպտոս 6000 Հայ կը համարուի, Ռումանիա 8000, Բուլգարիա 5839, Հունգարիա 3223, Կալիցիա 1865ին 8206, Հնդկաստան 1480 կը համարուի, որոնցմէ 872 ի Կալկաթա կը բնակի: Կան փոքրիկ հայ գաղթականութիւններ Պարիս, Մարսէյլ, Մանչէստր, Լոնդոն, Հիւսիսային Ամերիկա:

Ըստ այսմ բովանդակ Հայերու թիւն է 2 առ առաւելն 2 1/2 միլիոն. ասոնց ամենամեծ մասը հին

(գրիգորեան) եկեղեցւոյն կը վերաբերի. կաթողիկեայ Հայերն 100.000է աւելի են. իսկ բողոքականք դժուարաւ 40.000է աւելի։*

---

* Այստեղ հեղինակը վերջին տխուր դէպքերու համառօտ ակնարկութիւն մը կ'ընէ, որոնք ամենածանօթ եւ միանգամայն սրտաճմլիկ ըլլալուն՝ զանց կ'առնենք։ Այս դէպքերուս առթիւ եւրոպական լեզուներով բազմաթիւ գրքեր լոյս տեսած են Հայոց եւ կոտորածներու վրայ, որոնց ցանկը գործոյս վերջը կը դնենք։ Կը դնենք նաեւ Հայ կաթողիկոսաց ցուցակն՝ ամենանոր հետազօտութեանց համեմատ։

# ՑԱՆԿ 1895էն—1897

## ՀԱՅՈՑ ԿՈՏՈՐԱԾՆԵՐՈՒ ԱՌԹԻՒ ԼՈՅՍ ՏԵՍԱԾ ԳԻՐՔԵՐՈՒ*

---

**Aghassi.** L'Assassinat du P. Salvatore, par les soldats turcs. Témoignage d'Aghassi un des quatres chefs de l'insurrection de Zeïtoun. Traduit de l'Arménien par Archag Tchobanian, avec une Préface de Pierre Quillard. Paris, Mercure de France, 1897, 8°, 45 pp.

**Amicus Patriae.** Armenien und Kreta. Eine Lebensfrage für Deutschland. Braunschweig und Leipzig, G. Reuter, 1896.

**Anais Caumel Decazis.** Les voix éplorées de l'Arménie. Paris, Schmidt, 1897, 8°, 24 pp.

**Anglo-Armenian Association.** England, Turkey, and Russia, a historical retrospect. London, 1896, 1 d.

**An old Indian.** Historical sketch of Armenia and the Armenians in ancient and modern times with special reference to the present crisis. London, 1896, 8 , VIII + 200 pp., 1 map. 5 sh.

---

* *Այս ցուցակին մէջ դրուած են 1895—1897 Մայիս լոյս տեսած միայն գիրքերը, եւ ոչ թէ լրագիրներու մէջ հրատարակուած յօդուածները: Կ'ենթադրուի որ պիտի ըլլան ուրիշ մէկ քանի հրատարակութիւններ ալ, որոնք մեր ծանօթութեան հասած չեն:*

**Antoine Emile.** Appel aux armes. Les massacres d'Arménie. Illustré de 3 gravures hors texte et accompagné d'une carte des massacres d'Arménie. Bruxelles, 1897, Fr. 2.—.

**Apollonio D. Fred.** Pro Armenia. Conferenza tenuta il 13 Decembre 1896 nella sala dei banchetti. Venezia, Emiliana, 1896, 8⁰, 15 pp.

**Argyll Duke of —.** Our responsibilities for Turkey facts and memories of forty years. London, J. Murray, 1896, 8⁰, 10 + 166 pp., 2 sh. 8 d.

**Armenia.** London, Information (Armenia) bureau, 1897, 8⁰, 63 pp., 1 d.

**Arménie, L'—** Persécutée, 1896, 7.

**Armeniens Hilferuf an das Schweizervolk.** Zürich, 1896, 8⁰, 8 pp.

АХОВЪ М. Очерки изъ исторіи армянскаго „государства". С. Петерб. 1897. R. —.50.

**Baridon R.** Arménie, coup d'oeil général et explicatif sur son histoire et les derniers événements. Lausanne, 1896, 16 pp., 5 Centimes.

**Beheznilian K.** Armenian Home-Life. An adress to the Boys and Girls of England. London, 1896, 8⁰, 16 pp. Illustr. 2 d.

— In Bonds: An Armenian's Experiences, Second Edition, London (I. ed. 1896 Sept.), 1896 Dec., 8⁰, 63 pp., 1 sh. 6 d.

**Bérard Victor.** La politique du Sultan. 3e éd., Paris, Calmann Lévy, 1897, XIX + 361 pp., Fr. 3.50.

**Bertacchi C.** L'Asia Minore. L'Oriente e gli Armeni. Messina, 8⁰, 1896, 1 sh.

**Betragal of Armenia.** A reply to Lord Salisbury. With a letter from the Duke of Argyll. Manchester „Guardian", Printing Works, 1897.

**Blackwell A. S.** Armenian Poems. Rendered into English Verse by — — —. Boston, 1896, 8⁰, 142 pp., Doll. 1.25.

